## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. **տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի**, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6**

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՀՈՒՆԻՍ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1977 թվականի մայիսի 24-ին տեղի ունեցավ Սովետական Միության կո-
մունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:
Պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, սահմանադրական
հանձնաժողովի նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը «Սովետական
Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության նա-
խագծի մասին»:
Ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակու-
թյանը մասնակցեցին. Ուկրաինայի կոմկուսի Դոնեցկի մարզկոմի առաջին
քարտուղար ընկ. Բ. Վ. Կաչուրան, ՍՄԿԿ Պենզայի մարզկոմի առաջին քար-
տուղար ընկ. Լ. Բ. Երմինը, Ղազախստանի կոմկուսի Կոկչետավի մարզկոմի
առաջին քարտուղար ընկ. Ե. Ն. Աուելբեկովը, ՍՄԿԿ Կույբիշևի մարզկոմի
առաջին քարտուղար ընկ. Վ. Պ. Օրլովը, Ուզբեկստանի կոմկուսի Տաշքենդի
մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Մ. Մուսախանովը, ՍՄԿԿ Մոսկվայի
քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզ-
կոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Ռոմանովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտ-
կոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին:
ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հիմնականում հավանություն տվեց սահմա-
նադրական հանձնաժողովի ներկայացրած ՍՍՀՄ Սահմանադրության նախա-
գծին և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը հանձնարարեց այն դնել
համաժողովրդական քննարկման:

Կենտկոմի պլենումն այդ հարցի առթիվ ընդունեց որոշում:

Կենտկոմի պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ա. Սուսլովի հաղորդումը «ՍՍՀՄ պետական հիմնի մասին»: Պլենումը հավանություն տվեց ՍՍՀՄ պետական հիմնի տեքստին ու երաժշտական խմբագրմանը և այդ հարցը հանձնեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քննարկմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննության առավ նաև կազմակերպական հարցեր.

Պլենումը ընկ. Ն. Վ. Պոդգոռնուն ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընտրեց ընկ. Կ. Վ. Ռուսակովին:

Պլենումն ընկ. Կ. Ֆ. Կատուշևին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ Տնտեսական փոխօգնության խորհրդում աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ

*Հարգելի ընկերնե՛ր:*

*Մենք պետք է քննարկենք ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագիծը: Քաղբյուրոն ուշադրությամբ ուսումնասիրել է այդ փաստաթուղթը և սկզբունքորեն հավանություն տվել դրան: Քանի որ դուք բոլորդ արդեն ծանոթ եք նախագծին, կանգ կառնեմ միայն մի քանի հանգուցային, սկզբունքային հարցերի վրա:*

## I.

Առաջին հարց. ինչո՞ւ հարկ եղավ ստեղծել նոր Սահմանադրություն:

*Որովհետև, ընկերնե՛ր, չորս տասնամյակի ընթացքում մեր երկրում, մեր ամբողջ հասարակության մեջ տեղի են ունեցել խոր փոփոխություններ:*

*Երբ ընդունվում էր 1936 թվականի Սահմանադրությունը, մեզ մոտ ըստ էության նոր էր ավարտվել սոցիալիզմի հիմքերի ստեղծումը: Բոլորովին երիտասարդ էր և դեռ չէր ամրապնդվել կոլտնտեսային կարգը: Ժողովրդական տնտեսության տեխնիկական մակարդակը դեռ հեռու էր առավել զարգացած ինդուստրիալ երկրների մակարդակից: Կյանքի տարբեր բնագավառներում շարունակում էր զգացվել նախահեղափոխական ժամանակների ժառանգությունը:*

*Իսկ այժմ Սովետական Միությունում կառուցված է զարգացած, հասուն սոցիալիստական հասարակարգ:* Խոշոր, սկզբունքային փոփոխությունները անդրադարձել են հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա:

*Անճանաչելիորեն փոխվել է երկրի էկոնոմիկան: Նրանում անբաժանելիորեն տիրապետում է սոցիալիստական սեփականությունը: Ստեղծվել և հաջողությամբ գործում է ժողովրդատնտեսական միասնական, հզոր օրգանիզմ: Այն զարգանում է գիտատեխնիկական հեղափոխությունը սոցիալիստական կարգերի առավելությունների հետ զուգորդելու հիման վրա:*

*Փոխվել է նաև հասարակության սոցիալական դեմքը:*

*Այսօր մեր բանվոր դասակարգը կազմում է երկրի բնակչության երկու երրորդը: Դրանք տասնյակ միլիոնավոր կրթված, տեխնիկապես գրագետ, քաղաքականապես հասուն մարդիկ են: Նրանց աշխատանքն ավելի ու ավելի է մոտենում ինժեներատեխնիկական աշխատողների աշխատանքին: Զգալիորեն աճել է բանվորների հասարակական ակտիվությունը, նրանց մասնակցությունը պետության կառավարմանը:*

Փոխվել է նաև գյուղացիությունը։ Ներկայիս կոլտնտեսականը ծնվել ու մեծացել է կոլտնտեսությունում, նրա հոգեբանությունը ձևավորվել է արդեն սոցիալիստական հիմքի վրա։ Նա կառավարում է ժամանակակից տեխնիկան։ Իսկ նրա կրթական մակարդակը, նրա ապրելակերպը հաճախ շատ քիչ են տարբերվում քաղաքայինից։

Հիրավի, ժողովրդական, սոցիալիստական է դարձել մտավորականությունը։ Ժողովրդի կուլտուրայի մակարդակի աճի և կոմունիստական շինարարության ասպարեզում գիտության դերի աննախընթաց աճի համեմատ մեծանում է նաև մտավորականության տեսակարար կշիռը մեր հասարակության կյանքում։

Մեզանում ոչ միայն իրավաբանական, այլև փաստական է դարձել ազգերի հավասարությունը։ Մեր բոլոր հանրապետությունները, այդ թվում նաև այն հանրապետությունները, որոնք նախկինում հետ էին մնում տնտեսական և կուլտուրական տեսակետից, այժմ հասել են զարգացման բարձր մակարդակի։ Միաժամանակ յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան դարձել է ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի անխզելի մասը։

Այդ բոլոր փոփոխությունների ընդհանուր հայտարարը սովետական հասարակության հարաճուն սոցիալական միատարրությունն է։ Է՛լ ավելի է ամրապնդվել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անխախտ դաշինքը։ Հետզհետե ջնջվում են սոցիալական հիմնական խմբերի միջև եղած տարբերությունները։ Իրենց կյանքի բուն ընթացքով ավելի ու ավելի են մերձենում մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները։ Առաջացել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։

Հասուն սոցիալիզմի կառուցման շնորհիվ, այն բանի շնորհիվ, որ բնակչության բոլոր խավերն անցել են բանվոր դասակարգի գաղափարաքաղաքական դիրքերը, որպես պրոլետարիատի դիկտատուրա ծնունդ առած մեծ պետությունը նույնպես վերաճել է համաժողովրդական պետության։

Երկրի կյանքի այդ բոլոր պրոցեսները ղեկավարել և ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը՝ մեր հասարակության ուղղություն տվող, կազմակերպող և մոբիլիզացնող ուժը՝ Հոկտեմբերի ժամանակներից մինչև մեր օրերը։ Այժմ ավելի ու ավելի բարդ ու բազմազան են դարձել այն խնդիրները, որ նրան հարկ է լինում լուծել։ Է՛լ ավելի պատասխանատու է դարձել նրա դերը, մեծացել են երկրի ներքին ամբողջ կյանքի և նրա արտաքին քաղաքականության վրա կուսակցության ուղղություն տվող ներգործության մասշտաբները։

Վերջապես, խիստ փոխվել են նաև Սովետական Միության միջազգային դրությունը, աշխարհի սոցիալ-քաղաքական ամբողջ պատկերը։

Վերջ է տրված ՍՍՀՄ-ի կապիտալիստական շրջապատմանը։ Սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ։ Ստեղծվել է սոցիալիստական հզոր դաշինք։ Էապես թուլացել են համաշխարհային կապիտալիզմի դիրքերը։ Նախկին գաղութների տեղում առաջացել են տասնյակ երիտասարդ պետություններ, որոնք հանդես են գալիս իմպերիալիզմի դեմ։ Անչափ մեծացել են մեր երկրի միջազգային հեղինակությունն ու ազդեցությունը։

Այդ ամենի շնորհիվ համաշխարհային ասպարեզում ուժերի դասավորությունը միանգամայն փոխվել է։ Ռեալ հնարավորություն է առաջացել կանխելու նոր համաշխարհային պատերազմը, այդպիսի պատերազմի ծագման սպառնալիքն արդեն զգալիորեն թուլացել է, թեև այդ իմաստով մենք դեռ մեծ աշխատանք պետք է կատարենք, դեռ համառ պայքար պետք է մղենք։

Հենվելով ձեռք բերվածի վրա, սովետական ժողովուրդը, կուսակցության ղեկավարությամբ, այժմ լուծում է նոր խնդիրներ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հասարակական հարաբերու-



թյուններն աստիճանաբար կոմունիստականի վերափոխելու, մարդկանց կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու խնդիրները։

Սրանք են, կարճ ասած, 1936 թվականից հետո մեր հասարակության մեջ, երկրի կյանքում տեղի ունեցած հիմնական փոփոխությունները։ Սրանք են ՍՍՀՄ նոր Սահմանադրության ստեղծման հիմնական պատճառները և նախադրյալները։

## II.

**Ընկերնե՛ր, նոր Սահմանադրության նախագիծը մեծ ու տևական աշխատանքի արգասիք է։ Նրա հիմքը կազմել են կուսակցության հստակ և կոնկրետ ցուցումները։** ՍՄԿԿ XXV համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված էր. «Սահմանադրության նոր նախագծի մեջ, ըստ երևույթին, պետք է արտացոլել սոցիալիզմի մեծ հաղթանակները, վավերագրել սոցիալիստական կարգերի ոչ միայն ընդհանուր սկզբունքները, որոնք արտահայտում են մեր պետության դասակարգային էությունը, այլև զարգացած սոցիալիստական հասարակարգի, նրա քաղաքական կազմակերպության հիմնական գծերը»։ Նաև նշվեց, որ անհրաժեշտ է արտացոլել ժողովրդական տնտեսության ղեկավարման սկզբունքները, հասարակության հոգևոր կյանքում պետության դերը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը։

Կուսակցության այս սկզբունքային դրույթները արտացոլված են նախագծում։

Աշխատելով նախագծի վրա, **մենք ամուր կերպով կանգնած ենք եղել հաջորդայնության հողի վրա։** Նախագծի մեջ պահպանվել և զարգացվել են սոցիալիստական տիպի Սահմանադրության՝ դեռևս Վ. Ի. Լենինի կողմից նախանշված, բնորոշ գծերը։

Վ. Ի. Լենինը, բոլշևիկների կուսակցությունը ելնում էին այն բանից, որ Սահմանադրությունը ոչ միայն իրավաբանական ակտ է, այլև կարևորագույն քաղաքական փաստաթուղթ։ Կուսակցությունը Սահմանադրությունը դիտում էր որպես հեղափոխության նվաճումների հաստատում և դրա հետ մեկտեղ որպես սոցիալիստական շինարարության հիմնական խնդիրների ու նպատակների հռչակում։

Այդպիսին էր ՌՍՖՍՀ 1918 թվականի մեր առաջին Սահմանադրությունը, որը ամրապնդեց Հոկտեմբերի նվաճումները և սահմանեց սովետական պետության՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետության, դասակարգային էությունը։

Այդպիսին էր նաև ՍՍՀՄ 1924 թվականի Սահմանադրությունը, որը սահմանեց միութենական սոցիալիստական պետության կազմավորման սկզբունքները։

1936 թվականի Սահմանադրությունը օրենսդրականորեն վավերացրեց ՍՍՀՄ-ում սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաղթանակը և դրան համապատասխանեցրեց իշխանության ու կառավարման մարմինների ամբողջ սիստեմը, ինչպես նաև ընտրությունների կարգը։ Հասարակության զարգացման այն ժամանակ մշակված սահմանադրական շրջանակները դիմացել են ժամանակի քննությանը։

Նոր նախագծում պահպանված են ներկայումս գործող Սահմանադրության սկզբունքային շատ դրույթներ, քանի որ դրանք շարունակում են համապատասխանել մեր կարգի էությանը, մեր զարգացման բնույթին։

Այսպիսով, նոր Սահմանադրության նախագիծը մի կողմից ընդհանրացնում է սովետական պատմության սահմանադրական ամբողջ փորձը, իսկ մյուս կողմից՝ այդ փորձը հարստացնում նոր բովանդակությամբ, որը համապատասխանում է արդի դարաշրջանի պահանջներին։

ոլորտներում, ինչպիսիք են տղամարդկանց հետ կանանց հավասար իրավունքների ապահովումը, քաղաքացիների իրավահավասարությունը՝ անկախ նրանց ազգային և ռասայական պատկանելությունից։

Հայտնի է, որ այժմ գործող Սահմանադրության մեջ նույնպես նախատեսված է սոցիալ-տնտեսական իրավունքների լայն կոմպլեքս, որոնք շոշափում են մարդկանց կյանքի բուն հիմքերը։ Բայց մենք լավ գիտենք, թե ինչպես է խորացել դրանց բովանդակությունը, այժմ որքան ավելի հարուստ և ծանրակշիռ են դրանց ընձեռած նյութական երաշխիքները։ Այս ամենը արտացոլված է նոր Սահմանադրության նախագծում։ Եթե, օրինակ, նախկինում խոսվում էր աշխատանքի իրավունքի մասին, ապա այժմ դա լրացվում է պրոֆեսիայի, զբաղմունքների ու աշխատանքի տեսակի ընտրության իրավունքով՝ քաղաքացու կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը և կրթությանը համապատասխան, ինչպես նաև, որ պակաս կարևոր չէ, հաշվի առնելով հասարակական պահանջմունքները։

Այնուհետև, եթե 1936 թվականի Սահմանադրության մեջ խոսվում է հիվանդության դեպքում և աշխատունակությունը կորցնելիս նյութական ապահովության իրավունքի մասին, ապա այժմ հարցը դրվում է ավելի լայնորեն, սովետական մարդկանց համար երաշխավորվում է առողջության պահպանման իրավունք։

Եթե կրթության իրավունքի մասին խոսվում էր ընդհանուր ձևով, ապա այժմ խոսքը վերաբերում է ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթությանը, պրոֆեսիոնալ տեխնիկական և բարձրագույն կրթության լայն զարգացմանը։

Նախագծում ասված է նաև սովետական քաղաքացիների այնպիսի իրավունքի մասին, որը գրված չէ այժմյան Սահմանադրության մեջ։ Ես նկատի ունեմ բնակարանի իրավունքը, որն ավելի ու ավելի լրիվ է ապահովվելու բնակարանային շինարարության ծրագրի իրականացման համեմատ, ինչպես նաև կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությանը պետության կողմից աջակցելու միջոցով։ Մեր նոր Սահմանադրությունը աշխարհում առաջիններից մեկը կհռչակի մարդու համար այդ կենսականորեն կարևոր իրավունքը։

Նախագծում զգալիորեն ավելի լրիվ են ձևակերպված ՍՍՀՄ քաղաքացիների քաղաքական իրավունքները և ազատությունները:

Հռչակվում է պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու յուրաքանչյուր սովետական քաղաքացու իրավունքը և մատնանշվում են այդպիսի մասնակցության կոնկրետ ձևերը։

Լրիվ ծավալով հաստատված է նաև գործող Սահմանադրության մեջ գրված խոսքի, մամուլի, ժողովների, միտինգների, փողոցային երթերի և ցույցերի ազատությունը։ Անհատի իրավունքների սահմանադրական երաշխիքների զգալի լրացումը կդառնան պետական և հասարակական մարմիններում առաջարկություններ մտցնելու, աշխատանքում եղած թերությունները քննադատելու, պաշտոնատար անձանց գործողությունները դատարանում գանգատարկելու քաղաքացիների իրավունքը, ինչպես նաև կյանքի և առողջության, ունեցվածքի և անձնական ազատության, պատվի և արժանապատվության վրա կատարվող ոտնձգություններից դատական պաշտպանության իրավունքը։

Անշուշտ, ընկերներ, Սահմանադրության նախագիծը ելնում է այն բանից, որ քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները չեն կարող և չպետք է օգտագործվեն մեր հասարակարգի դեմ, ի վնաս սովետական ժողովրդի շահերի։ Ուստի նախագծում ուղղակի ասվում է, օրինակ, որ քաղաքացիների իրավունքների և ազատությունների օգտագործումը չպետք է վնաս հասցնի հասարակության և պետության շահերին, մյուս քաղաքացիների իրավունքներին, որ քաղաքական ազատությունները տրամադրվում են աշխատավորների շահերին համապատասխան և սոցիալիստական կարգերի ամրապնդման նպատակներով։

Հարկավոր է, որ յուրաքանչյուր սովետական մարդ պարզ գիտակցի, որ իր իրավունքների գլխավոր երաշխիքը, վերջին հաշվով, հայրենիքի հզորությունն ու բարգավաճումն է։ Իսկ դրա համար յուրաքանչյուր քաղաքացի պետք է զգա՛ իր պատասխանատվությունը հասարակության հանդեպ, բարեխղճորեն կատարի իր պարտքը պետության հանդեպ, ժողովրդի հանդեպ։



Ուստի Սահմանադրության նախագծում ընդգծված է ազնվորեն և բարեխղճորեն աշխատելու, հայրենիքը պաշտպանելու քաղաքացու պարտականությունը։

Առաջին անգամ սահմանադրական պահանջի բնույթ են ընդունում նաև սովետական պետության շահերը պահպանելու, նրա հզորության ու հեղինակության ամրապնդմանը նպաստելու, հասարակական կարգի պահպանմանը լստ ամենայնի աջակցելու, պետական ու հասարակական ունեցվածքի հափշտակումների ու շռայլումների դեմ պայքարելու, բնությունը և նրա հարստությունները պահպանելու, կուլտուրական արժեքների պահպանման մասին հոգալու պարտականությունները։ Նախագիծը քաղաքացիներին նաև պարտավորեցնում է՝ հոգալ երեխաների դաստիարակության մասին, նրանց մեծացնել որպես սոցիալիստական հասարակության արժանավոր անդամներ։

Նախագծի «Սոցիալական զարգացումը և կուլտուրան» հատուկ գլխում ասվում է, որ պետությունը հոգում է կրթության, գիտության ու արվեստի զարգացման մասին, քաղաքացիների աշխատանքի պայմանների բարելավման, նրանց եկամուտների մակարդակի բարձրացման մասին, սպառման հանրային ֆոնդերի աճի և արդարացի բաշխման մասին։

Այստեղ էլ նշված է, որ պետությունը նպաստում է դեպի կոմունիզմ մեր ուղու այնպիսի կարևորագույն բնագծերի նվաճմանը, ինչպիսիք են քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացումը, հասարակության սոցիալական միատարրության ուժեղացումը։

Նոր Սահմանադրության նախագծում նաև իր հատուկ արտահայտությունն է գտել սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդումը:

Մենք գիտենք, ընկերներ, որ այժմ գործող Սահմանադրության ընդունումից հետո առանձին տարիներ մռայլվեցին ապօրինի բռնություններով, սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների, կուսակցական և պետական կյանքի լենինյան նորմերի խախտումներով։ Դա արվում էր հակառակ սահմանադրական դրույթների։ Կուսակցությունը վճռականորեն դատապարտեց նման պրակտիկան, և այն երբեք չպետք է կրկնվի։

Հայտնի է, թե մեր Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետը և սովետական կառավարությունը ինչպիսի մեծ աշխատանք են կատարել սովետական օրենքները կատարելագործելու, քաղաքացիների իրավունքների ամեն տեսակ խախտումների, իշխանության չարաշահումների, բյուրոկրատական խեղաթյուրումների դեմ հաստատուն երաշխիքներ ստեղծելու նպատակով։ Ասես ընդհանրացնելով այդ բոլոր երաշխիքները, նախագիծն ընդգծում է, որ Սահմանադրության և օրենքների կիրառումը դարձվում է պետության բոլոր մարմինների և պաշտոնատար անձանց, հասարակական կազմակերպությունների ու քաղաքացիների պարտականությունը։

Ընկերնե՛ր։ Սովետական Միությունը բազմազգ պետություն է: Փորձը ցույց է տվել, որ ՍՍՀՄ ֆեդերատիվ կառուցվածքի հիմնական գծերն իրենց լիովին արդարացրել են։ Ուստի հարկ չկա որևէ սկզբունքային փոփոխություն մտցնելու սովետական սոցիալիստական ֆեդերացիայի ձևերի մեջ։

Նախագծում, ինչպես որ 1936 թվականի Սահմանադրության մեջ, նըշվում է, որ միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները պահպանվում են ՍՍՀ Միության կողմից։ Մնում են նաև այդ իրավունքների երաշխիքները։ Ավելին, դրանց ավելացվում են նորերը, ինչպես, օրինակ, այն, որ հանրապետությունները իրավունք ունեն մասնակցելու միութենական մարմինների կողմից այն հարցերի լուծմանը, որոնք վերապահված են ՍՍՀ Միության իրավասությանը։ Վավերագրվում է ՍՍՀՄ Գերագույն սովետում օրենսդրական նախաձեռնություն ցուցաբերելու՝ միութենական հանրապե-

տությունների իրավունքը, ի դեմս նրանց պետական իշխանության բարձրա-
գույն մարմինների։

Մյուս կողմից, ՍՍՀՄ ազգերի և ազգությունների հարաճուն մերձեցումը
թելադրում է պետության միութենական հիմունքներն ամրապնդելու անհրա-
ժեշտությունը։ Դա արտացոլված է նաև ՍՍՀՄ-ի՝ որպես միասնական միութե-
նական բազմազգ պետության, բուն սահմանման մեջ (հոդված 69)։ Ընդհա-
նուր միութենական հիմունքների ամրապնդումը արտացոլված է նաև նախա-
գծի մի քանի այլ դրույթներում։

Նախագծում ամբողջությամբ վերցրած ազգային-պետական կառուցվածք-
քի հարցերի լուծումը ապահովում է մեր բազմազգ միության ընդհանուր շա-
հերի և այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերի իրոք
դեմոկրատական զուգակցումը, ապահովում է մեր երկրի բոլոր ազգերի և
ազգությունների համակողմանի բարգավաճումն ու անշեղ մերձեցումը։

Նախագիծն արտացոլում է Մեր ժողովրդական տնտեսության զարգաց-
ման նոր փուլը։ Նրանում նշված է, որ ՍՍՀՄ էկոնոմիկան դարձել է միաս-
նական ժողովրդատնտեսական կոմպլեքս, որն ընդգրկում է երկրի տերիտո-
րիայում հանրային արտադրության, բաշխման ու փոխանակման բոլոր
օղակները։

Վավերագրված է նաև սոցիալիստական էկոնոմիկայի մի այնպիսի կա-
րևոր հիմունք, ինչպիսին պլանային կենտրոնացված ղեկավարության զու-
գակցումն է ձեռնարկությունների ու միավորումների տնտեսական ինքնու-
րույնության և նախաձեռնության հետ։

Սահմանադրության նախագծում ճշգրտված են կենտրոնական և տեղա-
կան պետական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների
լիազորությունները։ Ի տարբերություն ներկայումս գործող Սահմանադրու-
թյան, նախագծում տրված չէ միութենական և միութենական-հանրապետա-
կան մինիստրությունների ու գերատեսչությունների ցանկը։ Հաշվի առնելով,
որ, ինչպես ցույց է տվել փորձը, դրանց կազմը ժամանակ առ ժամանակ
փոխվում է, առավել հարմար համարվեց այդ ցանկը զետեղել ՍՍՀՄ Մի-
նիստրների սովետի մասին հատուկ օրենքում, որի ընդունումը նախատես-
վում է Սահմանադրության նախագծի 135-րդ հոդվածով։

Ընկերնե՛ր։ Սովետական Միության միջազգային դրության մեջ տեղի
ունեցած արմատական փոփոխությունները, համաշխարհային քաղաքակա-
նության մեջ նրա ազդեցության հսկայական աճը, մեր զարգացման ներքին
ու արտաքին գործոնների փոխադարձ սերտ կապը անհրաժեշտ դարձրին
Սահմանադրության նախագծում հատուկ գլուխ մտցնել ՍՍՀՄ արտաքին քա-
ղաքականության մասին։ Այդպիսի գլուխ առաջին անգամ է մտցվում Սահ-
մանադրության մեջ։

Նրանում ասվում է, որ սովետական պետությունը հետևողականորեն վա-
րում է խաղաղության լենինյան քաղաքականություն, հանդես գալիս ժողո-
վուրդների անվտանգության ամրապնդման և միջազգային լայն համագոր-
ծակցության օգտին։ ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը նպատակամղված
է ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման միջազգային բարենպաստ պայմանների
ապահովմանը, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, ազ-
գային ազատագրության և սոցիալական առաջադիմության համար ժողո-
վուրդների պայքարի պաշտպանությանը, ագրեսիվ պատերազմների կանխ-
մանը և տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գո-
յակցության սկզբունքի հետևողական իրականացմանը։ Սահմանադրության
մեջ առաջին անգամ պարզ կասվի, որ Սովետական Միությունը սոցիալիզմի
համաշխարհային սիստեմի, սոցիալիստական դաշինքի բաղկացուցիչ մասն
է։ Նա սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա զարգացնում և
ամրապնդում է բարեկամությունը, համագործակցությունն ու ընկերական
փոխօգնությունը սոցիալիզմի երկրների հետ։



Առաջին անգամ մտցված է նաև հատուկ գլուխ սոցիալիստական հայ-
րենիքի պաշտպանության մասին։ Բացի այդ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նա-
խագահության իրավասությանն է վերապահված նաև կազմել երկրի պաշտ-
պանության խորհուրդ և հաստատել նրա կազմը։

Սրանք են, կարճ ասած, այն գլխավոր մոմենտները, որոնք բնութագրում
են ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի բովանդակությունը։

# IV.

Այժմ թույլ տվեք անդրադառնալ այն խնդիրներին, որ մեր առջև կկանգ-
նեն նոր Սահմանադրության կենսագործման կապակցությամբ, այն նշանա-
կությանը, որ դրա ընդունումը կունենա մեր երկրի զարգացման համար,
միջազգային ասպարեզում սոցիալիզմի, խաղաղության և առաջադիմության
ուժերի դիրքերի ամրապնդման համար։

Նախ՝ Երկրի ներքին կյանքի համար նոր Սահմանադրության նշանակու-
թյան մասին։

Նրա դրույթների իրականացումը պետք է որակապես նոր մակարդակի
բարձրացնի մեր պետական և տնտեսական գործունեությունը, իշխանության
և կառավարման մարմինների ողջ աշխատանքը։

Խոսքը նախ և առաջ վերաբերում է ընտրովի մարմինների՝ սովետների
լայն լիազորությունների առավել արդյունավետ իրագործմանը։ Պետք է լիո-
վին օգտագործվեն այն հսկայական հնարավորությունները, որոնք ունի դե-
պուտատների՝ բնակչության բոլոր խավերի, բոլոր պրոֆեսիաների, բոլոր
ազգությունների դեպուտատների, երկու միլիոնանոց բանակը։ Սովետական
իշխանության այդ հզոր կոլեկտիվ ուղեղը լուծում է և կլուծի ավելի ու ավելի
բարդ ու բազմազան խնդիրներ։ Նա կարող է և պետք է իրականացնի ամենա-
ներգործուն վերահսկողությունը բոլոր աստիճանների գործադիր մարմինների
աշխատանքի նկատմամբ։

Շատ բան պետք է արվի օրենսդրության բնագավառում։ Սահմանադրու-
թյան հիման վրա պետք է մշակվեն միութենական օրենքներ ընտրություննե-
րի մասին, Գերագույն սովետի աշխատակարգը, օրենք Մինիստրների սովե-
տի մասին, կարգավորվեն երկրամասային, մարզային և օկրուգային սովետ-
ների, մինիստրությունների ու գերատեսչությունների լիազորությունները։
Հարկ կլինի, առանց ժամանակ կորցնելու, մշակել և հաստատել միութենա-
կան ու ինքնավար հանրապետությունների նոր սահմանադրությունները։
ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը կդառնա սովետական պետության օրենք-
ների հավաքածուի միջուկը, որի կազմումն սկսված է ՍՄԿԿ XXV համագու-
մարի որոշումներին համապատասխան։

Միևնույն ժամանակ նոր Սահմանադրությունը պետք է հանգեցնի այն
բոլոր մարմինների աշխատանքի զգալի բարելավմանը, որոնց վրա է դրված
սովետական օրենքների պահանջների խստիվ կիրառման ապահովումը։ Խոսքս
դատախազության, դատարանի, արբիտրաժի, մյուս վարչական մարմինների,
ժողովրդական վերահսկողության մասին է։ Կուսակցությունը այդ բոլոր մար-
միններից սպասում է ավելի մեծ նախաձեռնություն, սկզբունքայնություն,
անհաշտվողականություն սովետական իրավակարգի ամեն տեսակի խախ-
տումների դեմ մղվող պայքարում։

Շատ կարևոր է, որ նախագծում ցույց են տրված սոցիալիստական
տնտեսավարման ամբողջ սիստեմի, պլանային մարմինների և էկոնոմիկայի
ու կուլտուրայի կառավարման մյուս մարմինների ողջ աշխատանքի մշտա-
կան կատարելագործման հնարավորությունները։ Նրանց հիմնական ֆունկ-
ցիաները որոշված են Սահմանադրությամբ։ Հարկավոր է, որ դրանք կատար-
վեն լիովին ու հստակորեն, որպեսզի բարձրանա յուրաքանչյուր մարմնի,
յուրաքանչյուր պաշտոնատար անձի պատասխանատվությունը։

Թե՛ բոլոր աստիճանների սովետները, թե՛ կառավարությունը, թե՛ մի-

նիստրությունների ու գերատեսչությունները և թե տեղական սովետների գործկոմները մշտապես պետք է իրենց աշխատանքները ստուգեն ըստ Սահմանադրության պահանջների։ Կուսակցական մարմիններն էլ պետք է պետական ու տնտեսական մարմինների ղեկավար կոմունիստներից ավելի խիստ պատասխան պահանջեն, թե նրանք ինչպես են կատարում իրենց սահմանադրական պարտականությունները։

Նոր Սահմանադրության կենսագործումը միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց հնարավորություն կտա է՛լ ավելի ակտիվորեն ներգրավվել էկոնոմիկայի կառավարման, պետական ապարատի աշխատանքի վերահսկման գործին։

Էկոնոմիկայի կառավարման գործում ցենտրալիզմը անհրաժեշտ է և օրինաչափ։ Բայց նույնքան էլ անհրաժեշտ է մեր տնտեսության զարգացման պայմանների ողջ բազմազանության մանրազնին հաշվառումը։

Իսկ սա անկարելի է առանց արտադրական կոլեկտիվների նախաձեռնության հետագա բարձրացման, առանց կառավարմանը իրենց՝ աշխատավորների ակտիվ, ես կասեի, սրտացավ մասնակցության։ Սոցիալիզմի պայմաններում դեմոկրատիան եղել և մնում է էկոնոմիկայի զարգացման, հասարակության տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառների զարգացման կարևոր լծակը։

Այսպիսով, Սահմանադրության մեջ առկա է հսկայական ստեղծագործական պոտենցիալ։ Եվ հարկավոր կլինի այն ստեղծագործաբար օգտագործել։

«...Սովետական Սահմանադրությունը,— ասել է Վ. Ի. Լենինը,— ծառայում է ու մշտապես կծառայի աշխատավորներին և մի հզոր զենք է սոցիալիզմի իրականացման համար մղվող պայքարում» (Երկերի լ. ժ., հ. 36, էջ 535)։ Այսօր Վլադիմիր Իլյիչը կավելացներ՝ և կոմունիզմի կառուցման զենք։

Կասկած չկա, ընկերնե՛ր, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության՝ զարգացած սոցիալիզմի Սահմանադրության, կառուցվող կոմունիզմի Սահմանադրության ընդունումը կլինի ոչ միայն պատմական իրադարձություն մեր երկրի համար, այլև հսկայական միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն։ Նրա կենսագործումը տևական խոր ազդեցություն կունենա մեր հայրենիքի սահմաններից շատ հեռու։

Մեր նոր Սահմանադրությունը ամբողջ աշխարհին ակնբախորեն ցույց կտա, թե ինչպես է զարգանում սոցիալիստական պետությունը՝ ավելի ու ավելի ամուր և խորը հաստատելով սոցիալիստական դեմոկրատիան, ակնբախորեն ցույց կտա, թե ինչպիսին է նա՝ այդ սոցիալիստական դեմոկրատիան, որն է նրա էությունը։ Մեր Սահմանադրությունը ցույց կտա պետության ու հասարակության գործերի կառավարմանը ժողովրդական լայն զանգվածների հարաճուն ռեալ մասնակցության բազմազան ձևերն ու հսկայական թափը, մի բան, որ չգիտեն բուրժուական երկրները, որտեղ իրոք կառավարում է միայն կապիտալիստների փոքրաթիվ դասակարգը։

Կարդալով մեր նոր Սահմանադրությունը, մարդիկ է՛լ ավելի պարզորոշ կտեսնեն, թե որքան լայն ու բազմազան են սոցիալիստական հասարակության քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները։

Սահմանադրության դրույթների մեջ աշխարհը կտեսնի այն պետությունը, որն իր նպատակը համարում է ամբողջ ժողովրդի, առանց բացառության նրա բոլոր դասակարգերի ու խմբերի բարեկեցության ու կուլտուրայի անընդհատ աճը և ակտիվորեն աշխատում է հասնել այդ նպատակին։

Վերջապես, մեր նոր Սահմանադրությունը ամենայն համոզչությամբ ցույց կտա, որ հաղթանակած սոցիալիզմի առաջին պետությունը իր դրոշակի վրա առհավետ գրել է «խաղաղություն» բառը՝ որպես իր արտաքին քաղաքականության բարձրագույն սկզբունք, որ համապատասխանում է սեփական ժողովրդի և մոլորակի մյուս բոլոր ժողովուրդների շահերին։

Սովետական Միության նոր Սահմանադրությունը, անտարակույս, կհարստացնի համաշխարհային սոցիալիզմի փորձի ընդհանուր գանձարանը։



Հաղթանակած սոցիալիզմի նվաճումները, որոնք Սահմանադրության մեջ արտացոլված են խտացված տեսքով, ոգեշունչ օրինակ կլինեն այն երկրների ժողովուրդների համար, որոնք վերջերս են ընտրել սոցիալիստական զարգացման ուղին։

Դրանք կմեծացնեն կապիտալի երկրների աշխատավոր զանգվածների վստահությունը այն պայքարում, որ նրանք մղում են իրենց իրավունքների համար, կապիտալիստական շահագործման ճնշումից ազատվելու համար։

Դեմոկրատիայի հասկացությունների և մարդու իրավունքների՝ բուրժուական ու ռևիզիոնիստական պրոպագանդայի կողմից տրվող խեղաթյուրված և գռեհկացված մեկնաբանությանը մենք հակադրում ենք սոցիալիստական հասարակության քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների ամենալիակատար և ռեալ կոմպլեքսը։ Պատմության կշեռքին մենք դնում ենք աշխատավորների իրոք դարակազմիկ նվաճումները, որոնք բանվոր դասակարգի իշխանության շնորհիվ ձեռք են բերվել կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։

# V.

Ընկերնե՛ր։ Կենտկոմի քաղբյուրոն գտնում է, որ պլենումի հավանությունն ստացած նոր Սահմանադրության նախագիծը պետք է, ինչպես որ այդ մասին ասվեց կուսակցության XXV համագումարում, դրվի համաժողովրդական քննարկման։ Դա նշանակում է, որ մեզ մեծ թափի ու նշանակության աշխատանք է սպասում։

Սովետական ժողովրդի քննարկմանը ներկայացվելու է մի փաստաթուղթ, որի մեջ արտացոլված են հեղափոխության հիմնական նվաճումները, նոր հասարակարգի կառուցման մեր անցած ուղին։ Ուստի Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակի տոնակատարության նախապատրաստումը և նոր Սահմանադրության նախագծի քննարկումը օրգանապես շաղկապված, միմյանց լրացնող միջոցառումներ են։

Մեր առջև խնդիր է կանգնած ապահովել Սահմանադրության նախագծի առավել լայն, ազատ և իսկապես գործարար քննարկումը, այդ գործի մեջ ներգրավել աշխատավորների մասսային, բնակչության բոլոր խավերի ներկայացուցիչներին, այդ նպատակներով օգտագործել հասարակական գործունեության՝ մեզանում ստեղծված ձևերը։

Անհրաժեշտ է նաև ստեղծել այն դիտողությունների և առաջարկությունների հաշվառման հստակ մեխանիզմը, որոնք աշխատավորներից կստացվեն բոլոր կանալներով։

Հարկ է հաշվի առնել, որ Սահմանադրության նախագծի մասսայական քննարկման ընթացքում աշխատավորների տեսադաշտում կլինի նաև կուսակցական, սովետական և տնտեսական ապարատի բոլոր օղակների պրակտիկ գործունեությունը։ Խոսք կլինի մարդկանց հուզող հրատապ հարցերի, չլուծված խնդիրների, աշխատանքում տեղ գտած այս կամ այն թերության մասին։

Դրան պետք է պատրաստ լինել։ Հարկ կլինի օպերատիվորեն և կոնկրետորեն արձագանքել քննադատությանն ու առաջարկություններին, միջոցներ ձեռնարկել բարելավելու գործերի վիճակը այնտեղ, որտեղ դա անհրաժեշտ է։

Մենք նոր Սահմանադրության քննարկումը ծավալում ենք մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ լարված աշխատում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման ուղղությամբ։ Համաժողովրդական քննարկումը կօգնի երկրի ամբողջ հասարակական կյանքի հետագա ակտիվացմանը։ Դա պետք է ժողովրդի մեջ արթնացնի ստեղծագործական նոր ուժեր, նոր թափ հաղորդի սոցմրցմանը, բարձրացնի յուրաքանչյուրի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար։

Սահմանադրության քննարկման լայն ծավալմանը պետք է նպաստեն,

դրան պետք է քաղաքական պարզորոշ ուղղություն տան կուսակցական կազ-
մակերպությունները և կուսակցական մարմինները: Եթե նրանք կարողանան
այս բանը ճիշտ անել, ապա դա, անտարակույս, կբարելավի այս տարվա՝
ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման և մեծ Հոկտեմբերի 60-ամյակի
տարվա, քաղաքական և տնտեսական արդյունքները:

Սահմանադրության նախագծի քննարկումը սովետների կենսական գործն
է: Այդ աշխատանքի կազմակերպման ընթացքում նրանք կոչված են ընդգրկե-
լու երկրի փաստորեն ամբողջ չափահաս բնակչությանը: Այժմ բոլոր միութե-
նական հանրապետություններում ընթանում է տեղական սովետների ընտրու-
թյունների նախապատրաստությունը: Կարևոր է, որ դա հմտորեն օգտագործ-
վի: Գուցե օգտակար կլինի Սահամանադրության նախագիծը քննարկել նորըն-
տ.իր տեղական սովետների նստաշրջաններում:

Մեր մասսայական, հասարակական կազմակերպություններից, առաջին
հերթին արհմիություններից ու կոմերիտմիությունից, ստեղծագործական
միություններից ու կազմակերպություններից, գիտական հիմնարկներից մենք
սպասում ենք, որ նրանք ակտիվորեն կմասնակցեն նոր Սահմանադրության
քննարկմանը:

Պետք է առանձնահատուկ դեր խաղան մասսայական ինֆորմացիայի
միջոցները: Քննարկման ընթացքի հմուտ և վառ լուսաբանում, աշխատավոր-
ների ձայնի նկատմամբ հարգալից վերաբերմունք՝ այս ամենը կպահանջվի
մեր մամուլից, ռադիոյից ու հեռուստատեսությունից:

Կարճ ասած, ընկերներ, նոր Սահմանադրության նախագծի քննարկումը
պետք է առաջնահերթ կարևորություն ունեցող գործ դառնա մեր բոլոր կազ-
մակերպությունների և մեր բոլոր կադրերի համար:

Ավարտելով ելույթս, ես կուզենայի, ընկերներ, մեկ անգամ ևս ընդգծել,
որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումը կարևոր ուղենիշ կդառնա երկրի
քաղաքական պատմության մեջ: Այն կդառնա մեր լենինյան կուսակցության,
ամբողջ սովետական ժողովրդի ևս մեկ պատմական ավանդը կոմունիզմի
կառուցման մեծ գործում և դրա հետ մեկտեղ՝ ազատության, մարդկության
առաջադիմության, աշխարհի կայուն խաղաղության համար ամբողջ աշխար-
հի աշխատավորների պայքարի ինտերնացիոնալ գործում:

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ Է

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ, գյուղացիու-
թյան ողջ կացութաձևի հեղափոխական վերափոխման
գործում մեր կուսակցությունը միշտ առաջնորդվել է լենինյան կոոպերատիվ
պլանի հանճարեղ դրույթներով, պլան, որի մեջ իրենց խտացված արտահայ-
տությունն են գտել սոցիալիստական ուղիով գյուղատնտեսության վերափոխ-
ման մասին մարքս-լենինյան տեսության հիմնարար գաղափարները:

Գյուղատնտեսական արտադրության զարգացման նկատմամբ կուսակ-
ցության, նրա Կենտրոնական կոմիտեի սևեռուն ուշադրությունը բնական է
ու հասկանալի: Դա սոցիալիստական էկոնոմիկայի այն ճյուղերից է, որը
վճռական դեր է խաղում նյութական արտադրության ընդլայնման, բնակչու-
թյան կենսամակարդակի բարձրացման գործում: Կուսակցության ագրարա-
յին քաղաքականությունը, որի ելակետային դրույթները մշակվել են Վ. Ի.
Լենինի կողմից, աչքի է ընկնում պատմական զարգացման այս կամ այն փու-
լին բնորոշ սոցիալ-տնտեսական առանձնահատկությունները խորապես հաշ-
վի առնելու իր ճկունությամբ, հասունացած հարցերը առաջադրելու և գիտա-
կանորեն լուծելու իր կարողությամբ:

Արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականությունն ուղղ-
ված է գյուղատնտեսական արտադրությունն ըստ ամենայնի ինտենսիվաց-
նելու, այն էկոնոմիկայի բարձր զարգացած ճյուղ դարձնելու, քաղաքի և գյու-
ղի միջև եղած էական տարբերությունները հաղթահարելու նպատակին: Այդ
խնդիրների լուծման գործում կուսակցությունն առաջնահերթ կարևորություն
է տալիս լայն մասշտաբներով գյուղատնտեսական արտադրության համա-
կենտրոնացմանը, միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական
ինտեգրացման հիման վրա դրա մասնագիտացմանը, ճյուղի կառավարման
կազմակերպական ձևերի կատարելագործմանը: Գյուղատնտեսության սո-
ցիալական հեռանկարը որոշող այդ գործոնների մեջ է նրա հետագա ին-
տենսիվացման ու արդյունավետության բարձրացման երաշխիքը:

Մեր երկրում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ողջ
ընթացքը վկայում է այն մեծ նշանակության մասին, որ կուսակցությունը
տալիս է գյուղատնտեսության մեջ արտադրության հանրայնացման մակար-
դակի բարձրացմանն ու աշխատանքի բաժանման կատարելագործմանը:
Արտադրության համակենտրոնացման ու դրա հետ մեկտեղ աշխատանքի
բաժանման հետագա խորացման նոր փուլի սկիզբը նշանավորեց ՍՄԿԿ
Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը, որը մշակեց գյուղատնտեսության
ու նրա հետ կապված արդյունաբերական ճյուղերի վերելքի կոմպլեքսային
ծրագիր: Պլենումը գիտականորեն հիմնավորեց գյուղում արտադրական-

Ի դեպ, միջտնտեսային կոոպերացման ասպարեզում որոշակի փորձ են կուտակել նաև մեր հանրապետության մի շարք շրջաններ։ Ախուրյանում, օրինակ, հաջողությամբ գործում է միջկոլտնտեսային շինարարական խորհուրդը, չորս տնտեսություններում կառուցվում են ժամանակակից տիպային կովանոցներ, արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտներ։ Շրջանն ունի նաև պետական-կոլտնտեսային մեղվաբուծական տնտեսություն, տոհմային մատղաշի աճեցման միջտնտեսային կազմակերպություն, կովերի արհեստական սերմնավորման կոոպերատիվ։ Բավական որոշակի են նաև հեռանկարները։ Այգաբացի սովխոզի և Արևիկի կոլտնտեսության բազայի վրա այստեղ նախատեսվում է կառուցել 5.000 գլուխ խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ինտենսիվ բտման համալիր։ Պլանավորվում է շրջանում ստեղծել կաթի արտադրության 8 խոշոր համալիր։

Արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման միջոցառումների մշակմանը համապատասխան գիտահետազոտական ինստիտուտներին մասնակից դարձնելու որոշակի փորձ ունի Էջմիածնի շրջանը։ Այստեղ նկատելիորեն աշխուժացել է միջտնտեսային կոոպերացման և գյուղատնտեսական արտադրության ինդուստրացման նպատակով տարվող աշխատանքը։ Գործարկվել է Ջրառատի թռչնաբուծական ֆաբրիկան՝ բավական մեծ կարողություններով, Հայկաշենում ստեղծվել է միջտնտեսային կաթնապրանքային, իսկ Այգեկում՝ ջերմատնային տնտեսություններ։ Նախատեսվում է ստեղծել նաև երինջների աճեցման ձեռնարկություն, ինչպես նաև միջտնտեսային շինարարական կազմակերպություն։

Ընթացիկ հնգամյակում կավարտվի Հրազդանի շրջանի տնտեսությունների մասնագիտացումը, ընդ որում կարևորվում է տավարաբուծության և ոչխարաբուծության զարգացումը։ Այստեղ մշակվել է նաև գյուղերի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային ծրագիր, որի հիմքում դրված են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման վերաբերյալ կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման պահանջները։

Միջտնտեսային ձեռնարկությունների ստեղծման, արտադրության մասնագիտացման նպատակով զգալի աշխատանք է կատարվում նաև Կալինինոյի և Սիսիանի շրջաններում, որոնք նկատելի տեսակարար կշիռ ունեն հանրապետության գյուղատնտեսության մեջ։

Աշխատանքի ընդհանուր-միութենական բաժանման մեջ մեր հանրապետության գյուղատնտեսական ճյուղերից առավել մեծ տեսակարար կշիռ ունի այգեգործությունը, որը հումքի արտադրության ու վերամշակման բնույթով իսկ ագրոարդյունաբերական ինտեգրացման մեծ հնարավորություններ է ընձեռում։ Նույնը վերաբերում է նաև բանջարաբուծությանը։ Ցավոք, թե՛ մեկում և թե՛ մյուսում աններելիորեն ցածր է ինտեգրացման գործակիցը, համապատասխան մարմինները ոչնչով չարդարացված դանդաղկոտություն են ցուցաբերում այդ ճյուղերում արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման հարցերը լուծելիս։ Իսկ դա լրջորեն վնասում է այդ ճյուղերի ինտենսիվացմանը, այն վիթխարի ռեզերվների օգտագործմանը, որոնք, դատելով Մոլդավիայի փորձից, ի հայտ են գալիս մասնագիտացման ու համակենտրոնացման, ագրոարդյունաբերական համալիրների պայմաններում։

Մեր հանրապետության գյուղատնտեսությունը, հատկապես նրա լեռնային ու նախալեռնային գոտիներում, աչքի է ընկնում իր մանրատվածությամբ, իսկ դա խիստ բացասաբար է անդրադառնում գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման վրա։ Մեզ մոտ 100 հեկտար մշակվող վարելահողին ընկնում է 320 ձիաուժ էներգակարողություն, մինչդեռ Միության մեջ այդ ցուցանիշը հասնում է 196-ի։ Համադրելով թվերը, կարելի է եզրակացնել, որ մեր հանրապետությունում պետք է նկատելիորեն բարձր լինի նաև արտադրության մեքենայացման մակարդակը։ Սակայն վիճակա-



գրությունն այլ բան է ասում։ Մեկ էտալոնային տրակտորի հերթափոխային արտադրողականությունը միջին հաշվով կազմում է ընդամենը 2,7 հեկտար, մինչդեռ միութենական ցուցանիշը 6,8 հեկտար է, խիստ ցածր է հացահատիկի կոմբայնների սեզոնային բեռնվածությունը։ Այնպիսի աշխատատար պրոցեսներ, ինչպիսիք են այգեթաղն ու այգեբացը, մեքենայացված են ընդամենը 5 տոկոսով։

Մեքենայացման մակարդակը խիստ ցածր է նաև անասնապահության մեջ։ Բավական է նշել, որ մեզ մոտ կոմպլեքսային մեքենայացման է ենթարկվել ֆերմաների 6 տոկոսը միայն (Միության մեջ՝ մոտ 25 տոկոս), կովերի կիթը մեքենայացվել է ընդամենը 24 տոկոսով (Միության մեջ՝ 83 տոկոս) և այլն։ Նոր տեխնոլոգիան անբավարար է արմատավորվում նույնիսկ նորակառույց կովանոցներում, իսկ դրա հետևանքով տուժում է արտադրությունը, խիստ ուշացումով են հատուցվում կապիտալ ներդրումները։

Ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ հանրապետության գյուղատնտեսական մեքենայական պարկը գնալով ընդլայնվում է, բայց դրա օգտագործման գործակիցը չի բարձրանում նույնպիսի կորագծով։ Դրությունը շտկելու նպատակով պետք է լրջորեն կատարելագործել տեխնիկայի օգտագործման եղանակները, ավելի համարձակորեն կիրառել այնպիսի առաջավոր ձևեր, ինչպիսիք են տեխնիկայի համակենտրոնացումը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման մասնագիտացված ջոկատների ու տրակտորային բրիգադների սպասարկման ոլորտի մեջ ավելի մեծ թվով կոլտնտեսությունների ու սովխոզների ներգրավումը։ Ըստ արժանվույն գնահատելով այդ եղանակների կիրառման նպատակով հանրապետությունում տարվող աշխատանքների կարևորությունը, այնուամենայնիվ, պետք է նշել, որ տեխնիկայի արդյունավետ օգտագործման ամենահուսալի երաշխիքը արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է։

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԸ, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, կարևորագույն համապետական, համաժողովրդական խնդիր է, որի լուծման գործում պետք է արժանի ավանդ ներդնեն էկոնոմիկայի բոլոր ճյուղերը։

Խոսքն ամենից առաջ վերաբերում է արդյունաբերական ձեռնարկություններին ու շինարարական կազմակերպություններին, որոնք կոչված են ժամանակին ապահովելու գյուղի պատվերների համաչափ կատարումը և գյուղատնտեսական օբյեկտների գործարկումը։ Համաժողովրդական գործի մեջ իրենց բաժինը ներդնելու վերաբերյալ կուսակցության պահանջն արդյունաբերության ու շինարարության աշխատողները շատ ավելի լայն չափով են ընկալում, քան այդ թելադրում է նրանց անմիջական պարտքը։ Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում բազմաթիվ գործարաններ ու շինարարական կազմակերպություններ են ներգրավվել գյուղին ցույց տրվող շեֆական օգնության մեջ և այդ գործում ծանրակշիռ ավանդ են մուծում։ Շեֆական օգնության լավ օրինակ են տալիս Հրազդանի արդյունաբերական ձեռնարկություններն ու շինարարները։ Միայն վերջին երկու տարում նրանց օգնությամբ շրջանում կառուցվել են 12 ժամանակակից կովանոց, հինգ կերախոհանոց, սենաժի և սիլոսի տարողություններ, պահեստներ, տեխնիկայի պահպանման ծածկեր, մեքենայացվել են անասնագոմերը, բարեկարգվել են գյուղական շատ փողոցներ։ Մի խոսքով, շեֆական օգնությունը ցույց է տրվել բոլոր այն դեպքերում, երբ գյուղն զգացել է դրա կարիքը։

Դեռևս 1973 թ. հունիսին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց մի կողմից քաղաքային ձեռնարկությունների ու կազմակերպությունների, մյուս կողմից հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների միջև շեֆական կապեր հաստատելու մասին։ Շեֆական աշխատանքները նկատելիորեն աշխուժացան, գործարար կապեր հաստատվեցին շատ ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների միջև։

ժողովրդայնության մասին: Եվ տարակույս չկա, որ Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումն էապես կնպաստի ընթացիկ տարվա՝ նոր Սահմանադրության ընդունման և մեծ Հոկտեմբերի հոբելյանական տարվա քաղաքական ու տնտեսական արդյունքների բարելավմանը:

Քաղաքական ու արտադրական այն ընդհանուր վերելքը, որն այնքան բնորոշ է այսօր մեր ողջ հանրապետությանը, իր վառ արտահայտությունն էր գտել նաև ՀԿԿ Կենտկոմի՝ հունիսի 10-ին տեղի ունեցած պլենումի աշխատանքներում:

Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի մայիսյան պլենումի արդյունքների և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրների մասին զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը: Արտահայտելով Հայաստանի կոմունիստների, հանրապետության բոլոր աշխատավորների միահամուռ կամքը, պլենումը ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումներին, այդ պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման բովանդակած դրույթներին ու հետևություններին և դրանք ընդունեց ի անշեղ ղեկավարություն և ի կատարումն:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը միահամուռ հավանություն տվեց ՍՍՀՄ Սահմանադրության նախագծին և խորին երախտագիտությամբ ու շնորհակալությամբ նշեց ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի հսկայական աշխատանքը վերջին 40 տարում սովետական հասարակության մեջ տեղի ունեցած խոր փոփոխությունների, Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների սահմանադրական փորձի վերլուծության և ընդհանրության ասպարեզում:

Արտադրական կոլեկտիվներին համակած մասսայական ոգևորությունը համընկնում է գյուղատնտեսական աշխատանքների կարևորագույն փուլի՝ բերքահավաքի անցկացմանը: Կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ համաժողովրդական այս ակտիվությունը նպատակամղել բերքահավաքի հաջող կազմակերպմանը, գյուղատնտեսության առջև ծառացած պրոբլեմների հաջող լուծմանը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ՝ ԱՐԺԱՆԻ ՀԱՄԱԼՐՈՒՄ

Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ աննախադեպ աճում է ՍՄԿԿ ղեկավար դերը: Դա պայմանավորված է մի շարք օբյեկտիվ պատճառներով, որոնցից գլխավորներն են՝ կոմունիստական շինարարության մասշտաբների ընդլայնումն ու խնդիրների բարդությունը, մասսաների ստեղծագործական ու հասարակական ակտիվության վերելքը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը, գիտական կոմունիզմի տեսության, նրա ստեղծագործական զարգացման և պրոպագանդման հարաճուն նշանակությունը: Այժմ առավել կարևորվում են նաև աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների հաղթահարման պայքարն ուժեղացնելու անհրաժեշտությունը: Կուսակցությունն այդ ղեկավար դերն իրականացնում, երկրի առջև ծառացած քաղաքական, սոցիալ-տնտեսական խնդիրները հետևողականորեն ու անվերապահորեն լուծում է իր շարքերի միասնության ապահովման, կուսակցական կազմակերպությունների գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործման, հասարակական կյանքի բոլոր կողմերի նկատամամբ իր ներգործունության ուժեղացման, կոմունիստների ակտիվության բարձրացման և նախաձեռնության զարգացման շնորհիվ: Այս առումով էլ այժմ առավել, քան երբեք, մեծացել է ՍՄԿԿ շարքերի համալրման նշանակությունը, բարձրացել կուսակցության մեջ ընդունվողներին, նրա բոլոր անդամներին ներկայացվող պահանջները:

Պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը ժամանակին հիշեցրել է, որ կուսակցության ուժն իր շարքերի միասնության մեջ է: Իսկ կուսակցության միասնությունը, նրա գաղափարական համախմբվածությունն ու կազմակերպական ամրությունը հսկայական չափով պայմանավորված են նրա որակական կազմով: Ահա ինչու իր զարգացման բոլոր փուլերում կուսակցությունը մեծ նշանակություն է տվել և տալիս է իր շարքերի ամրապնդմանը՝ ՍՄԿԿ անդամության, նրա կազմի ձևավորման սկզբունքների ու եղանակների հարցը համարելով կուսակցական շինարարության տեսության և պրակտիկայի արմատական խնդիրներից մեկը:

Նշենք, որ կուսակցության, սովետական հասարակության կյանքում նրա հարաճուն դերի, նրա շարքերի որակական կազմի բարելավման վերաբերյալ Վ. Ի. Լենինի մշակած ուսմունքը հետագա զարգացում ստացավ ՍՄԿԿ համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում, կուսակցության ղեկավար գործիչների ելույթներում: «Եվ որքան առաջ ենք շարժվում,— նշել է ընկ. Լ. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— որքան ավելի խոշոր խնդիրներ է լուծում կուսակցությունը, այնքան ավելի շատ պետք է հոգ տանենք նրա շարքերը համալրելու թարմ ուժերով, այն մարդկանց հաշվին, ովքեր արժանացել են սկզբնական կուսակցական կազմակերպության, ամբողջ կոլեկտիվի ճանաչմանը, ովքեր իրենց ակտիվորեն են դրսևորում արտադրության մեջ և հասարակական կյանքում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 95):

կազմակերպությունների առջև։ Դրանց լուծումը պահանջում է տևական ու բազմակողմանի աշխատանք, մեծ պատասխանատվություն ու հոգատարություն։

Կուսակցության շարքերն ընդունելու համար, առաջին հերթին, հարկավոր է ամենօրյա կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական աշխատանք տանել մասսաների շրջանում, պահանջկոտություն հանդես բերել մարդկանց ընտրության նկատմամբ, անդուլ կերպով պայքարել ՍՄԿԿ շարքերի անաղարտության համար։

Յուրաքանչյուր կուսկազմակերպության պարտքն է՝ համակողմանի ստուգել ՍՄԿԿ շարքերն ընդունվողին, նրա մասին դատել իր կոնկրետ գործերով, արտադրության մեջ ու հասարակական կյանքում նրա ունեցած դերով, կուսակցության որոշումների կենսագործման ասպարեզում նրա ներդրած ավանդով։ Վ. Ի. Լենինն զգուշացրել է, որ ավելի լավ է տասն աշխատողներ իրենց չանվանեն կուսակցության անդամներ, քան թե մի շաղակրատ իրավունք ու հնարավորություն ունենա լինելու կուսակցության անդամ։

Կուսակցության շարքերի համալրման ժամանակ անհատական մոտեցման ներգործուն միջոցներից մեկը աշխատանքն է այն անձանց հետ, ովքեր պատրաստվում են ընդունվել ՍՄԿԿ շարքերը։ Մի շարք կուսկազմակերպություններում գործում են ՍՄԿԿ շարքերն ընդունվողների դպրոցներ, կուսակցությանը զինվորագրվել ցանկացողներից շատերը կոմունիստների հետ սովորում են քաղաքական և տնտեսագիտական կրթության սիստեմում։

ՍՄԿԿ շարքերի արդյունավետ համալրման պահանջներից է հրապարակայնության ապահովումը։ Մեծապես շահում են այն սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք ընդունելության յուրաքանչյուր հարց քննարկում են միայն դռնբաց կուսժողովներում, հանգամանորեն ուսումնասիրում ընդունվողի արժանիքներն ու թերությունները, հնարավորություն ստեղծում կոմունիստ և անկուսակցական գործընկերների համար՝ արտահայտելու իրենց կարծիքը։ Մեծ արդյունք կարող են տալ նաև կուսխմբի ու սկզբնական կուսկազմակերպության իրավունք չունեցող արտադրամասային կուսկազմակերպության դռնբաց ժողովներում ընդունվողի դիմումի նախնական քննարկումը և նախապես հայտարարության մեջ նրա ազգանվան նշումը։ Այսպիսով, կոմունիստներն ու անկուսակցականները նախապես ճանաչելով ընդունվողին, ժողովի են ներկայանում նրա մասին իրենց որոշակի կարծիքով։

Շատ կարևոր է երաշխավորողների պատասխանատվության բարձրացումը։ Նրանք պետք է շահագրգռություն հանդես բերեն, որպեսզի կուսակցության շարքերն ընդունվեն գիտակից, ակտիվ ու նախաձեռնող մարդիկ և հոգան նրանց գործնական, գաղափարական ու բարոյական հատկանիշների ձևավորման ու զարգացման մասին։ Կոմունիստի պարտքն է երաշխավորել ոչ թե հանուն սիրալիրության, այլ հանուն սկզբունքայնության, այն դեպքում, երբ համակողմանի ճանաչում է նրան, գիտե ոչ միայն որպես գործընկերոջ, այլև որպես ընտանիքի անդամի, հասարակական աշխատողի, քաջածանոթ է նրա գիտակցական կյանքի անցած ուղուն։ Հասկանալի է, այս պայմաններին խստագույնս հետևելու դեպքում պատահական, անարժան մարդիկ չեն թափանցի կուսակցության մեջ։

Կուսակցության շարքերի համալրման շատ կարևոր գործում վճռական նշանակություն ունի ՍՄԿԿ անդամության թեկնածուների, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը։ Չի կարելի մոռանալ, որ ՍՄԿԿ որակական կազմի բարելավումն ապահովվում է ոչ միայն ընդունվողների նկատմամբ պահանջկոտության բարձրացմամբ, այլև երիտասարդ կոմունիստների ամենօրյա դաստիարակությամբ, նրանց՝ որպես կուսակցության ակտիվ, գիտակից, կարգապահ, գաղափարապես կոփված մարտիկներ ձևավորելու ասպարեզում կուսկազմակերպությունների ծավալած բազմակողմանի աշխատանքով։

Կոմունիստի ձևավորումն սկսվում է թեկնածուական ստաժից։ Այդ ժամանակամիջոցում թեկնածուն պետք է որոշակիորեն կոփվի, սովորի հարգել կուսակցության ավանդույթները, իմանա ոչ միայն կանոնադրական



իրավունքները, այլև բարեխղճորեն կատարի իր պարտականությունները։ Եվ օրինաչափ է, որ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց բարձրացնել թեկնածուական ստաժի նշանակությունը՝ կուսակցության մեջ ընդունվողի քաղաքական ու գործնական հատկանիշները բազմակողմանիորեն ստուգելու, նրա մարքս-լենինյան դաստիարակությունն ապահովելու, կուսակցական կոփման իսկական դպրոց անցնելու համար։ Խոսքն առաջին հերթին այն մասին է, որ թեկնածուն գործնական մասնակցություն ունենա կուսակցական կյանքին, իսկ կազմակերպությունն օգնի նրան ՍՄԿԿ անդամ ընդունվելու գործում, ուսումնասիրի նրա անձնական հատկանիշները, անդամ կոչվելու արժանիքները։ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս մշակել այնպիսի կանոններ, որոնք իսկապես ստաժը դարձնեն լուրջ քննության ժամանակամիջոց, այլ ոչ թե սոսկ ձևականություն։

Ղեկավարվելով լենինյան այս ցուցումներով և ՍՄԿԿ XXV համագումարի դրույթներով՝ հանրապետության կուսակցական շատ կազմակերպություններ վերջին ժամանակներս էականորեն բարելավել ու կատարելագործել են ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները։ ՍՄԿԿ անդամության թեկնածուները փորձառու կոմունիստների հետ մասնակցում են կուսժողովների նախապատրաստմանը, կուսակցական լուսավորության ցանցում, երիտասարդ կոմունիստների դպրոցներում բարձրացնում իրենց գաղափարաքաղաքական մակարդակը։ Այս առումով դրական աշխատանք է կատարվում Երևանի Օրջոնիկիձեի շրջանում։ Այստեղ 1976 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու է ընդունվել 185 մարդ, և բոլորն էլ ունեն կուսակցական հանձնարարություններ, սովորում են երիտասարդ կոմունիստների դպրոցում։ Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեները և բյուրոները հետևում են նրանց արտադրական և հասարակական գործունեությանը։ Երաշխավորողները ևս նպաստում են թեկնածուների քաղաքական ու գործնական հատկանիշների զարգացմանը։

Ուշագրավ է նաև ՀԿԿ Նաիրիի շրջկոմի՝ ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքի փորձը։ ՍՄԿԿ XXV համագումարից հետո շրջկոմին առընթեր ստեղծվել է երիտասարդ կոմունիստների դպրոց, որը գործում է խնամքով մշակված ծրագրով։ Պարապմունքները ղեկավարում են կուսշրջկոմի քարտուղարները։ Պարբերաբար կազմակերպվում են ՍՄԿԿ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հանդիպումներ աշխատանքի վետերանների, շրջանի ղեկավարների հետ։ Երիտասարդ կոմունիստները ծանոթանում են շրջանի նվաճումներին, նրա զարգացման հեռանկարներին, ակտիվորեն մասնակցում հասարակական աշխատանքներին։ Նրանցից 195-ը ընտրված է կոմերիտական կազմակերպությունների ղեկավար մարմիններում, 47-ը տեղական սովետների դեպուտատներ են։ Կուսշրջկոմը պարբերաբար քննարկում է կուսկազմակերպությունների հաշվետվությունը ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքի վերաբերյալ։

Դրական օրինակներ կարելի է շատ թվարկել, սակայն հարկ է նկատել, որ ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքում կան և լուրջ թերություններ։ Դաստիարակության գործի անբավարար կազմակերպման հետևանքով որոշ թեկնածուներ կանոնադրությամբ սահմանված ժամանակամիջոցում գաղափարապես ու քաղաքականապես չեն կոփվում, դուրս են մնում կուսակցությունից։ Այսպես, անցած տարի Ղափանի շրջանի Ագարակ գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու էր ընդունել Է. Թորոսյանին։ Նա առաջավոր մեխանիզատոր էր, գերակատարում էր արտադրական նորմաները։ Սակայն կուսկազմակերպությունը նրան չներգրավեց ակտիվ հասարակական աշխատանքում, հոգ չտարավ նրա գաղափարաքաղաքական աճի մասին, չստուգեց նրան կուսակցական հանձնարարությամբ։ Եվ ահա հետևանքը. Է. Թորոսյանն սկսեց չարաշահել ոգելից խմիչքները, կատարեց խուլիգանական արարք,

ենթարկվեց քրեական պատասխանատվության և հեռացվեց ՍՄԿԿ անդամության թեկնածուների շարքերից։

Անկասկած, շատ բան պայմանավորված է մարդու անհատական հատկանիշներով, սակայն նրա դաստիարակությամբ մշտապես պետք է մտահոգված լինեն կուսկազմակերպությունները, ավագ ընկերները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1977 թ. ապրիլին տեղի ունեցած պլենումը քաղկոմշրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարեց պատշաճ կարգուկանոն հաստատել ՍՄԿԿ շարքերը նոր ընդունվողների և ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքում, բարձրացնել թեկնածուական ստաժի նշանակությունը և թեկնածուների պատասխանատվությունը։

***

Հասարակության հեղափոխական վերափոխման, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում կուսակցության ղեկավար դերի լենինյան ուսմունքը գիտական կոմունիզմի առանցքային պրոբլեմներից է։ Արդի պայմաններում, երբ ավելի է ընդլայնվում հասարակական պրոցեսների վրա գիտակցական ներգործության ոլորտը, բարդանում են տնտեսական, սոցիալական և գաղափարական խնդիրները և մեծանում դրանց մասշտաբները, էլ ավելի է աճում կուսակցության դերը՝ որպես հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի։ Այս պայմաններում, բնականաբար, հսկայական նշանակություն են ստանում կուսակցության կազմակերպական միասնության, նրա շարքերի միաձուլության, որակական կազմի բարելավման, կուսկազմակերպությունների կառուցվածքի կատարելագործման խնդիրները։ Այդ կարևորագույն խնդիրների անվերապահ իրագործման համար հարկավոր է ՍՄԿԿ շարքերը համալրել միայն արժանավոր մարդկանցով, ովքեր պատրաստ են անձնվիրաբար պայքարելու կուսակցության գործի համար, հետևողականորեն կենսագործելու նրա բոլոր որոշումները, մշտապես ղեկավարվելու ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության սկզբունքներով։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՀՈԳԵՎՈՐ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ


**Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
**ՍՍՀՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ**


ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ հոգևոր աշխարհի դիալեկտիկայի պրոբլեմների մշակումն առավել հրատապ նշանակություն է ստանում առանձնապես ՍՄԿԿ պատմական XXV համագումարի անցումից հետո։

Նախ, զարգացած սոցիալիզմին համապատասխանում է որակապես նոր փուլը կոմունիստական ֆորմացիայի հոգևոր առաջադիմության մեջ ընդհանրապես, մարդկության վերընթաց զարգացման մեջ՝ մասնավորապես։

Երկրորդ, զարգացած սոցիալիզմի հոգևոր աշխարհի բուռն և հարաճուն հարստացումն արագացնում է դեպի կոմունիզմ ՍՍՀՄ-ի աստիճանական առաջընթացի պրոցեսը և կապված է սոցիալիստական համագործակցության երկրների ինտերնացիոնալ կապերի հետագա ամրապնդման հետ։

Երրորդ, երկու սիստեմների, երկու հակադիր գաղափարախոսությունների հակամարտությունն առանձին սրությամբ է արտահայտվում և արտահայտվելու է հոգևոր կյանքի ոլորտում։ Այդ պայքարի բացառիկ բարդությունն ու նրա ուժեղացումը կապված են այն բանի հետ, որ եթե տնտեսական և քաղաքական ոլորտներում հնարավոր ու անխուսափելի են առանձին կոմպրոմիսներն ու համաձայնությունները, ապա գաղափարախոսության բնագավառում դրանք սկզբունքորեն բացառված են։ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար։ Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 11)։ Սոցիալիստական կուլտուրայի զարգացումը պահանջում է բուրժուական կուլտուրայի արժեքավոր նվաճումների քննադատական օգտագործումը զուգակցել ռեակցիոն բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ ու գիտականորեն փաստարկված պայքարի հետ, կոմունիստական գաղափարախոսության և ձևավորված սկզբունքորեն նոր սոցիալիստական ապրելակերպի գերազանցությունը լրիվ ու համակողմանիորեն բացահայտելու ունակության հետ։

## 1. Սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի էությունը

Սոցիալիզմի հոգևոր աշխարհի զարգացման ուսումնասիրման հարաճուն նշանակության արտացոլումն է այն, որ հրապարակ է գալիս մասնագիտական հատուկ գրականություն, որում հիմնականում ճիշտ է հետազոտվում իմացության այդ բարդ օբյեկտը։ Միայն վերջին տասը տարում լույս են տեսել մեծ քանակությամբ հետազոտություններ այդ պրոբլեմի շուրջ։

անձնականը գիտակցորեն հասարակականին ենթարկելով՝ դրանց ներդաշնակ զուգակցմամբ։ Այս պրոբլեմի այլ լուծման կողմնակիցները փաստորեն անգնում են անարխիզմի դիրքերը՝ «ինքնավար անհատի», հասարակությունից բացարձակ ազատության նրա պահանջով։ Բայց այդպիսի «ազատություն» պատմության մեջ չի եղել և չի կարող լինել, քանի որ, ինչպես Լենինն էր ասում, «Հասարակության մեջ ապրել և հասարակությունից ազատ լինել չի կարելի» (Երկեր, հ. 10, էջ 44)։ Անհատի իսկական ազատությունը, որը հնարավոր է և իրագործելի սոցիալիզմի ու կոմունիզմի օրոք, նույնպես չի կարող դիտվել որպես բացարձակ ազատություն հասարակությունից։

Ազատությունը հարկավոր է դիտել ոչ միայն որպես անհատի, նրա հոգևոր պոտենցիալի զարգացման պայման, այլև որպես համապատասխան սոցիալական կառուցվածքի միջոցով հասարակության հետ նրա ունեցած կապի ձև։

Սոցիալիզմի ժամանակ անհատը հասարակության հետ կապված է դասակարգերից, սոցիալական խավերից, ազգերից ու ազգություններից, աշխատանքային կոլեկտիվներից, տարբեր հասարակական կազմակերպություններից բաղկացած սոցիալական կառուցվածքի ողջ սիստեմի միջոցով։ Սոցիալիստական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը, ինչպես նաև համաշխարհային ասպարեզում հակադիր սոցիալական սիստեմների դասակարգային հակամարտության առկայությունը պահանջում են անշեղորեն պահպանել դասակարգային, կուսակցական մոտեցման սկզբունքները զարգացած սոցիալիզմի պայմաններում ևս անհատի պրոբլեմները քննարկելիս։

Այդ պրոբլեմի լուծման գործում իսկական լենինյան մոտեցումը տրված է ՍՄԿԿ XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ։ Համագումարը միահամուռ հավանությամբ ընդունեց Լ. Ի. Բրեժնևի հետևյալ խոսքերը. «...Հոգալով անհատի համակողմանի զարգացման, քաղաքացիների իրավունքների մասին, մենք դրա հետ մեկտեղ հարկ եղած ուշադրությունն ենք նվիրում հասարակական կարգապահության ամրապնդմանը, հասարակության հանդեպ բոլոր քաղաքացիների պարտականությունների կատարմանը։ Որովհետև առանց կարգապահության և առանց ամուր հասարակական կարգի դեմոկրատիան անիրագործելի է։ Իր պարտականությունների, ժողովրդի շահերի նկատմամբ յուրաքանչյուր քաղաքացու հենց պատասխանատու մոտեցումն է ստեղծում սոցիալիստական դեմոկրատիզմի, անհատի իսկական ազատության սկզբունքների առավել լրիվ մարմնավորման միակ հուսալի բազան» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 128)։

Համաշխարհային մասշտաբով հաղթանակած կոմունիստական հասարակարգում անհատը հասարակության հետ կապված կլինի ամենից առաջ զանազան աշխատանքային ստեղծագործական կոլեկտիվների միջոցով, որոնք կհաստատվեն որպես ապագա հասարակության հիմնական սոցիալական բջիջներ։ Բայց այդ ժամանակ ևս կծագեն ոչ անտագոնիստական հակասություններ հասարակական և անձնական շահերի միջև, որոնք կհաղթահարվեն համապատասխան, կոմունիստական մեթոդներով։

Սոցիալիզմի ժամանակ հասարակականի և անձնականի միջև հակասությունները դեռևս հաճախ ընդունում են ո՛չ միայն կոնֆլիկտային ձևեր, այլև երբեմն ստանում են անտագոնիստական բնույթ։ Հարկավոր է դեն նետել պարզունակ պատկերացումներն այն մասին, թե սոցիալիզմի օրոք, որի զարգացման աղբյուրը ոչ անտագոնիստական հակասությունների բացահայտումն ու հաղթահարումն է, լրիվ կվերանան հակամարտությունների դրսևորման բոլոր տարրերն ու կոնկրետ ձևերը։ Սովետական ժողովրդի, նրա պետության պայքարը հին հասարակարգի վերապրուկների, բոլոր սոցիալական պալարների դեմ հաճախ ընդունում է անտագոնիստական ձևեր։ Սովետական համաժողովրդական պետությունը, շարունակելով պրոլետարիատի դիկտատուրայի պատմական գործը զարգացած սոցիալիզմի պայմաններում, կոմունիզմի կառուցման ղեկավարումն իրականացնում է ոչ միայն համոզման միջոցով, որը գլխավորն է, այլև անհրաժեշտության դեպքում նաև հարկադրանքով՝ ընդհուպ մինչև պատժիչ միջոցների կիրառումը։



Այստեղ ծագում է սոցիալիզմի պայմաններում բարոյական և իրավական
նորմերի, կոմունիզմի կառուցման պրոցեսում բարոյական նորմերի անշեղ աճ-
ման և ապագայում իրավական նորմերի հետ նրանց անխուսափելի միաձուլման
և նոր հասարակության բոլոր անդամների կյանքի ու ստեղծագործության
միասնական կոմունիստական նորմերի վերածվելու դիալեկտիկայի պրոբլեմը։
Ստրուկտուրալիզմի մեթոդոլոգիան որոշակի ազդեցություն է ունեցել ո՛չ
միայն սոցիալական կառուցվածքի, անձնականի ու հասարակականի փոխհա-
րաբերության պրոբլեմի վերլուծության վրա, այլև արտահայտվել է նաև սո-
ցիալիստական հասարակության հոգևոր կյանքի մի քանի հետազոտություն-
ներում։ Դա արտահայտել է առանձին հեղինակների ձգտումը՝ հոգևոր կյանքը
հանգեցնելու նրա տարրերի քննարկման, այսինքն՝ միայն գիտության կամ ար-
վեստի, իրավունքի կամ բարոյականության և այլն և այլն։
Մինչդեռ դիալեկտիկա-մատերիալիստական մեթոդոլոգիան պահանջում է
ո՛չ միայն ուսումնասիրել յուրաքանչյուր ամբողջական երևույթը, նրա կառուց-
վածքը անդամատելով առանձին տարրերի, այլև բացահայտել ներքին կապն
ու փոխգործողությունը նրանց միջև։ Բայց դա էլ քիչ է։ Վ. Ի. Լենինը Փիլիսո-
փայական տետրերում ընդգծում էր Հեգելի այն մտքի ճշտությունը, որ իմացու-
թյունը հանգեցնել միայն փոխգործողությունը պարզելուն՝ նշանակում է զբաղ-
վել դատարկ գործով (տես Երկեր, հ. 38, էջ 195)։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր,
որ գլխավորը էության իմացությունն է պրոցեսների ներքին փոխադարձ կա-
պերի բացահայտման միջոցով և այդ փոխադարձ կապերի որոշիչ հիմքի հայտ-
նաբերումը, զարգացման պրոցեսի ուսումնասիրումը նրա ամբողջականության
մեջ, մեկ աստիճանից մյուսին՝ ավելի բարձրին անցման դիալեկտիկայի ուսում-
նասիրումը, անցում, որը հասարակական զարգացման պրոցեսում որոշվում է
առաջավոր դասակարգերի հեղափոխական-վերակերտիչ պրակտիկայով։
Ելնելով լենինյան այդ սկզբունքների պահանջներից, չի կարելի հաջողված
համարել հոգևոր կյանքի մի քանի բնորոշումներ, որոնք կան փիլիսոփայական
առանձին աշխատություններում։
Ոմանք հասարակական գիտակցությունն ամբողջովին նույնացնում են
հասարակության հոգևոր կյանքի հետ, այն դիտում որպես հասարակական ինչ-
պես տեսական, այնպես էլ առօրյա գիտակցության բոլոր դրսևորումների ամ-
բողջություն։ Որպես կանոն, «հասարակական-գիտակցություն» և «հոգևոր
կյանք» հասկացություններում դնում են միևնույն բովանդակությունը, առանց
դրանց սպեցիֆիկ սահմանազատման որևէ փորձի։
Առանձին աշխատություններում երբեմն հասարակական գիտակցությունը
կտրվում է հասարակության հոգևոր կյանքից կամ նույնիսկ հակադրվում նր-
րան։ Մեր կարծիքով, հավասարապես ճիշտ չեն ինչպես հասարակական գի-
տակցության լրիվ նույնացումը հասարակության հոգևոր կյանքի հետ, այն-
պես էլ դրանց անջատումը միմյանցից, կամ դրանց հարաբերակցության սխալ
մեկնաբանումը։
Ճշմարտությունն այն է, որ հոգևոր կյանքի հիմքը հասարակական կեցու-
թյունն է և նրա արտացոլումը՝ հասարակական գիտակցությունը։ Հասարակա-
կան գիտակցությունն ավելի լայն հասկացություն է, քան հոգևոր կյանքը։ Մեր
կարծիքով, հոգևոր կյանքը հասարակական գիտակցության էական կողմերի,
հասարակության վերընթաց զարգացման գործում պրոգրեսիվ դեր կատարող
նրա հիմնական ձևերի ակտիվ արտահայտությունն է։ Պարզաբանենք այս դր-
րույթը օրինակներով։ Սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքին հա-
տուկ է գիտության, արվեստի, բարոյականության, կոմունիստական գաղափա-
րախոսության բոլոր ձևերի ծաղկումը։ Բայց սոցիալիստական հասարակության
այդ հոգևոր կյանքից մենք բացառում ենք կրոնը, որը դեռ երկար ժամանակ
մնում է որպես հասարակական գիտակցության վերապրուկային ձև։ Նույն
կերպ էլ կարելի է դիտել կապիտալիզմի մյուս վերապրուկները, որոնք մտնում
են հասարակական գիտակցության մեջ, բայց հատուկ չեն սոցիալիզմի հոգևոր
աշխարհին, նրա ատրիբուտը չեն։ Այս սահմանազատումն անհրաժեշտ է կա-
տարել բացահայտելու ու սահմանազատելու այն իրական հակասությունների

ղանազան խմբերը, որոնց հաջող հաղթահարմամբ է պայմանավորված սոցիալիզմի հոգևոր աշխարհի միասնության հետագա օրինաչափ ամրապնդումը։

Հասարակական գիտակցության ներսում առկա է հակասությունների մի խումբ. մի կողմից նոր, առաջավոր, սոցիալիստական հայացքների ու նորմերի և, մյուս կողմից՝ կապիտալիզմի վերապրուկների միջև։ Հակասությունների մի այլ խումբ գոյություն ունի հասուն սոցիալիզմի հոգևոր կյանքի բոլոր կողմերի նոր բովանդակության անընդմեջ զարգացման և նրա արտահայտման ղանաղան ձևերի ետ մնալու միջև։ Այս և մյուս հակասությունների բացահայտման ու հաղթահարման պրոցեսում անշեղորեն զարգանում է նոր հասարակարգի հոգևոր կյանքի միասնությունը։

## 2. Սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի ծագումը և դրա զարգացման հիմնական փուլերը

Սովետական հասարակության հոգևոր միասնությունն սկսել է գոյավորվել ու զարգանալ որպես Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ առաջացած նոր կարգի օրինաչափ երևույթ։ Նոր հասարակարգի կառուցման յուրաքանչյուր նոր փուլ համապատասխանաբար արտացոլվում էր սոցիալիզմի և նրա յուրաքանչյուր ակտիվ կառուցողի հոգևոր աշխարհի ձևավորման մեջ։

Սոցիալիզմի հոգևոր աշխարհի առաջացումն ու զարգացումը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման ընդհանուր օրինաչափությունների գործողության արտահայտությունն է։

Հին հասարակարգի ընդերքում գոյավորվում են սոցիալիզմի ոչ միայն նյութական, այլև հոգևոր նախադրյալները։ Դրանք են՝ բանվոր դասակարգի մարքս-լենինյան գաղափարախոսության ստեղծումը, սոցիալիստական կուլտուրայի տարրերի առաջացումը, մասսաների հեղափոխական գիտակցականության անկասելի աճը։ Սակայն այս ամենը ոչ մի հիմք չի տալիս պնդելու, թե դեռևս կապիտալիզմի ընդերքում ստեղծվում է սոցիալիստական հասարակարգի հոգևոր աշխարհը։ Նման ըմբռնումից տրամաբանորեն հետևում է կապիտալիզմի հեղափոխական վերափոխման՝ որպես սոցիալիզմի ստեղծման անհրաժեշտ պայմանի անխուսափելիության ժխտումը, սոցիալիզմ, որն իրենից ներկայացնում է մի ամբողջական հասարակական սիստեմ՝ իրենին բնորոշ և́ նյութական և́ հոգևոր կյանքի որակապես նոր տիպով։

Եվ այսպես, մի անգամ ևս շեշտենք, որ սոցիալիստական հասարակության հոգևոր աշխարհի պատմականորեն նոր, բարձրագույն տիպի գոյավորումը կոմունիստական ֆորմացիայի ձևավորման ու զարգացման կարևորագույն օրինաչափություններից է։ Այդ հոգևոր աշխարհը դատարկ տեղում չի ստեղծվում, այլ գոյավորվում է հասարակական զարգացման և սոցիալիստական ու ապագա կոմունիստական հասարակարգի ձևավորման դիալեկտիկային լրիվ համապատասխան։ Սոցիալիզմի հոգևոր կյանքի գոյավորման դիալեկտիկան մի կողմից մարդկության զարգացման նախորդ դարաշրջանների կուլտուրայի ու ավանդույթների մեջ եղած ամեն իսկական արժեքավորի քննադատական վերամշակման ու յուրացման բարդ պրոցես է, իսկ մյուս կողմից՝ և դա գլխավորն է, նշանակում է հոգևոր կյանքի հին տիպերի բացասում և որակապես նոր, սոցիալիստական տիպի ձևավորում։

Ցավոք, այդ դիալեկտիկան միշտ չէ, որ ճիշտ է բացահայտվում սոցիալիստական կարգի առաջացման օրինաչափություններին նվիրված որոշ աշխատություններում։ Որոշ հեղինակներ չափազանց ընդարձակորեն են մեկնաբանում դեռևս հին հասարակարգի ընդերքում գոյացող որոշ սոցիալիստական տարրեր, դրանք ըստ էության նույնացնելով արդեն ձևավորված սոցիալիստական կարգի տարրերի հետ։

Այն պնդումը, թե սոցիալիստական, առավել ևս կոմունիստական սոցիալական ապրելակերպը ծագում է դեռևս կապիտալիզմի պայմաններում, երբեմնի պատահական սխալ արտահայտություն չէ, այլ, դժբախտաբար, որոշակի ըմբռնում։



Նման կոնցեպցիան օբյեկտիվորեն վերացնում է կապիտալիստական հասարակարգը հեղափոխական ճանապարհով սոցիալիստականի վերափոխելու պատմական անհրաժեշտությունը, որի ընթացքում, բանվոր դասակարգի ու նրա կոմունիստական ավանգարդի առաջատար դերի պայմաններում օրինաչափորեն ձևավորվում են սոցիալիստական հասարակարգը, նրա բազիսն ու վերնաշենքը, նրա նյութական և հոգևոր կյանքը։

Տվյալ դեպքում մեթոդոլոգիական սխալն այն է, որ սոցիալիստական հասարակարգի նախադրյալները, որոնք ձևավորվում են կապիտալիզմի ընդերքում, նույնացվում են կոմունիստական սոցիալական ապրելակերպի արդեն պատրաստի ատրիբուտների ու ձևերի հետ։ Հաշվի չի առնվում այն հանգամանքը, որ սոցիալիստական, և առավել ևս՝ կոմունիստական սոցիալական ապրելակերպն առաջանում և զարգանում է որպես ողջ սոցիալիստական հասարակական կարգի և, ամենից առաջ, արտադրության սոցիալիստական եղանակի ստեղծման ու զարգացման պրոցեսի անհրաժեշտ բաղկացուցիչ մասը։

Լինելով նոր հասարակական կարգի արտահայտությունը, սոցիալիստական ապրելակերպի հոգևոր կողմը մարմնավորվում է շահագործումից ազատագրված, սեփական կյանքի տերերն ու կերտողները դարձած մարդկանց՝ նոր ֆորմացիայի համար բնորոշ գիտակցական, ոգեշունչ գործունեության մեջ։

Սոցիալիզմի առաջին երկրի՝ ՍՍՀՄ-ի և համաշխարհային սոցիալիստական սիստեմի մյուս երկրների փորձի ընդհանրացման հիման վրա կարելի է առանձնացնել սոցիալիստական հասարակության հոգևոր աշխարհի ձևավորման ու զարգացման մի քանի հիմնական փուլեր։

Առաջին փուլն ընդգրկում է սոցիալիստական հեղափոխության հաղթանակից և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից մինչև հիմնականում սոցիալիստական հասարակարգի կառուցումն ընկած ժամանակաշրջանը, այսինքն՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանը։ Նոր հասարակության հոգևոր կյանքի ձևավորման այս ստադիայում մարքս-լենինյան գաղափարախոսությունը, դառնալով տիրապետող, դեռևս գերակշռող չի եղել լայն զանգվածների գիտակցության մեջ, որոնց հիմնական մասը կազմում էին, առանձնապես մեր երկրում, գյուղացիության մանրբուրժուական խավերը և մյուս ոչ պրոլետարական խմբերը։ Այս փուլում կոմունիստական կուսակցության և սոցիալիստական պետության գործունեության նպատակն է, որ մարքս-լենինյան գաղափարախոսությունը՝ որպես նոր հասարակության ողջ հոգևոր կյանքի առանցք, դառնա ոչ միայն տիրապետող, այլև գերակշռող՝ սոցիալիզմ կառուցողների գիտակցության մեջ։ Այդ նպատակին հասնելու միջոցներն են եղել մասսաների գաղափարաքաղաքական դաստիարակության ոլորտում կատարված լայն աշխատանքը, կուլտուրական հեղափոխության իրականացումը, սոցիալիստական մտավորականության գոյացումը և այլն։

Երկրորդ փուլն ընդգրկում է հիմնականում սոցիալիստական հասարակարգի կառուցումից մինչև վերջինիս վերածումը զարգացած, հասուն սոցիալիստական հասարակարգի։ Այս ստադիայում տիրապետող մարքս-լենինյան գաղափարախոսությունը գերակշռող հոգևոր ուժ է դառնում նոր հասարակարգի ակտիվ կառուցողների գիտակցության մեջ։ Այս փուլի ամենաբնորոշ գիծն է հասարակության նոր շարժիչ ուժերի՝ ժողովրդի բարոյաքաղաքական միասնության, սոցիալիստական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, ժողովուրդներին բարեկամության լիակատար ծավալումը։ Լինելով սոցիալիստական տնտեսական հարաբերությունների ծնունդ, այդ՝ իրենց հիմքում հոգևոր, շարժիչ ուժերն սկսեցին հարաճուն դեր կատարել նոր հասարակարգի վերընթաց զարգացման գործում։ Դրանք իրենց անհաղթահարելի ուժն առանձնապես վառ կերպով ցուցադրեցին Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում։ Այդ են վկայում հաղթական հարձակողական գործողությունները, որոնք իրականացվեցին այնպիսի պայմաններում, երբ մենք թշնամու նկատմամբ գերակշռություն չունեինք ո՛չ զորքերի թվաքանակի, ո՛չ էլ ռազմական տեխնիկայի քանակության տեսակետից։ Այսպես, Մոսկվայի մոտ մենք կարողացանք գերմանացիներին պարտության մատնել, հակառակորդի

նկատմամբ առանձին գերակշռություն չունենալով ո՛չ զորքերի թվաքանակով, ո՛չ տեխնիկայով: Մենք թվական գերակշռություն չունեինք նաև Ստալինգրադի մոտ գերմանացիների շրջապատման ու հետագա ջախջախման գործողությունն իրականացնելիս: Այս և մյուս համոզիչ փաստերը նոր հասարակարգի հոգևոր գործոնների անկասելի ուժի վկայությունն են:

Կոմունիստական կուսակցությունը, հենվելով սոցիալիստական հոգևոր գործոնների առավելությունների վրա և ամրապնդելով դրանք, ապահովեց Սովետական Միության վերջնական հաղթանակը՝ իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի կողմից նրան պարտադրված պատերազմում, կազմակերպեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և կուլտուրայի արագ վերականգնումն ու հետագա զարգացումը:

Երրորդ փուլն ընդգրկում է զարգացած սոցիալիզմի և աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը: Դրա տարբերիչ գիծը հասարակության հոգևոր կյանքի բոլոր ոլորտների համակողմանի, ներդաշնակ և առավել արագացող զարգացումն է:

Այս փուլում տեղի է ունենում հասուն սոցիալիզմի հոգևոր բոլոր կարողությունների հետագա բարգավաճում, հասարակության վերընթաց զարգացման գործում դրա դերի բարձրացում, դրանց օրգանական փոխներթափանցում կոմունիզմի հաջող կառուցման տնտեսական և քաղաքական գործոնների հետ: Լուծվում է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ հասուն սոցիալիզմի առավելությունների օրգանական միացման համաշխարհային պատմական խնդիրը: Այդ միացումը տեղի է ունենում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և հոգևոր ոլորտում, ելած իրական հակասությունների բացահայտման ու հաղթահարման հիման վրա:

### 3. Ռեալ հակասությունների հաղթահարումը նոր հասարակության հոգևոր կյանքի հետագա վերընթաց զարգացման անհրաժեշտ պայմանն է:

Հակասությունների բացահայտումն ու հաղթահարումը զարգացման համապատասխան օրենքն է: Այդ օրենքը լիակատար գործում է նաև սոցիալիզմի օրոք: Հնի, իր դարն ապրածի, կապիտալիզմի բոլոր հնարավոր վերապրուկների դեմ կոմունիստական նորի, աճողի մղած պայքարի մասին բացառիկ ուժով, կոնկրետ ու համոզիչ խոսվեց ՍՄԿԿ XXV համագումարում:

Հակասությունների բացահայտմամբ ու հաղթահարմամբ զարգացման դիալեկտիկական օրենքը դրսևորվում է սոցիալիստական հասարակության առաջատար ուժի՝ ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգի և՛ կյանքում, և՛ գործունեության մեջ: ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, գլխավորելով սոցիալիստական հասարակարգի կառուցումը, մարդկությանը հնարավորություն ընձեռեց մեծ թռիչք գործել առաջընթաց զարգացման մեջ և դրանով իսկ կատարեց կոմունիստական աշխարհի առաջին հայտնագործողի համաշխարհային-պատմական միսիան: Այս կարևորագույն դրույթը մենք գիտակցաբար շեշտում ենք այն պատճառով, որ նոր աշխարհի առաջին հայտնագործողի օրինական հպարտությունը սովետական ապրելակերպի, սոցիալիզմի հոգևոր աշխարհի բնորոշ հատկանիշն է:

Լենինյան կուսակցությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսում ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգի առաջատար դիրքն ապահովել է ընդհանրապես մեր դարաշրջանի հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների և, մասնավորապես, բանվորական շարժման զարգացման ներքին դիալեկտիկայի խոր բացահայտմամբ: Պատմական զարգացման առանձնահատկությունների շնորհիվ համաշխարհային պրոլետարիատի հեղափոխական պայքարի կենտրոնը իմպերիալիզմի դարաշրջանում փոխադրվեց Ռուսաստան: Հարցի այս կողմը լավ մշակված է գրականության մեջ: Միաժամանակ չպետք է մոռանանք, որ Ռուսաստանի պրոլետարիատի զարգացման պրոցեսները համաշխարհային բանվորական շարժման ներսում ծավալված պայքարի դիալեկտիկայից մեկուսացած չեն ընթացել: Այդ դիալեկտիկան արտահայտվել է երկու հակադիր՝ հեղափոխական և օպորտունիստական տենդենցների միջև մղված պայքարում:



Շնորհիվ Վ. Ի. Լենինի հանճարի, որը խոր կերպով արտահայտել է մեր դարաշրջանի հասարակական պահանջները և ստեղծել նոր տիպի կուսակցություն, մեր երկրում համաշխարհային բանվորական շարժման պատմության մեջ առաջին անգամ հեղափոխական նկրտումը լիակատար ու վերջնական հաղթանակ տարավ օպորտունիզմի բոլոր տարատեսակությունների ու երանգների նկատմամբ: Այս վերջնական արդյունքի մեջ են Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային-պատմական հաղթանակների և նոր հասարակարգի հաջող կառուցման դասակարգային խոր արմատները, ֆաշիստական Գերմանիայի դեմ սոցիալիզմի առաջին երկրի տարած մեծ հաղթանակի արմատները, հաղթանակ, որը դարակազմիկ նշանակություն ունեցավ մարդկության առաջընթաց զարգացման մեջ:

Հասուն սոցիալիզմի և աստիճանաբար կոմունիզմին անցնելու պայմաններում, որը կապված է ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգի հետագա քանակական աճի և որակական լուրջ փոփոխությունների հետ, չի դադարում գործել նրա ներքին զարգացման դիալեկտիկան: Այն հանդես է գալիս որպես սովետական բանվոր դասակարգի բացարձակապես գերակշռող առաջավոր և գիտակից մասի պայքար իր միջավայրի հետամնաց տարրերի, հին, իր դարն ապրած աշխարհի ամեն տեսակ վերապրուկները կրողների դեմ: Նորի, առաջավորի և հնի, հետամնացի միջև մղվող այդ պայքարն արտացոլում է բանվոր դասակարգի՝ դեռևս լրիվ չհաղթահարված անմիատարրությունը:

Մենք չպետք է մոռանանք, որ սոցիալիստական հասարակարգի կառուցման պրոցեսում բանվոր դասակարգն անշեղորեն աճում էր ո՛չ միայն ինքնավերարտադրման բազայի վրա, ոչ միայն կադրային ու ժառանգաբար բանվորական ընտանիքների հաշվին, այլև շնորհիվ այն բանի, որ գյուղացիությունից և մտավորականությունից մեծ թվով մարդիկ, ինչպես նաև որպես դասակարգեր ու սոցիալական խմբեր վերացած բուրժուազիայի, կուլակության, մանր բուրժուազիայի ներկայացուցիչներ մշտապես հոսում էին նրա շարքերը:

Միայն բանվոր դասակարգը, իր կոմունիստական ավանգարդի ղեկավարությամբ, ունակ եղավ բանվորական «կաթսայում» վերաեփելու, սոցիալիզմի ոգով վերադաստիարակելու աշխատավորների այդ խայտաբղետ զանգվածը: Բայց, ինչպես արդեն նշվեց, և՛ հասուն սոցիալիզմի պայմաններում, և՛ աստիճանաբար կոմունիզմին անցնելու պայմաններում լիովին չի վերանում ՍՍՀՄ-ի բանվոր դասակարգի անմիատարրությունը: Արտահայտվելով խիստ գիտականորեն, բանվոր դասակարգի որոշ անմիատարրությունը և դրա ծնունդ հանդիսացող պայքարը (նորի ու հնի, կոմունիզմի առաջավոր կառուցողների և հետամնաց տարրերի միջև) հասարակության զարգացման օրինաչափությունն են նրա գոյություն ունեցող դասակարգային շերտավորումից դեպի կոմունիստական կարգի լիակատար սոցիալական միատարրություն տանող ճանապարհին:

ՍՄԿԿ-ի ողջ սոցիալական քաղաքականությունը, մասսաների կոմունիստական դաստիարակության ասպարեզում նրա ծավալած հարաճուն գործունեությունը նպատակ ունեն բոլորին անխտիր հասցնելու կոմունիզմի առաջավոր կառուցողների մակարդակին և դրանով իսկ ապահովելու ողջ ժողովրդի բոլոր դասակարգերի ու խավերի միասնական ճակատով առաջընթացը դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը, դեպի կոմունիստական հոգևոր կյանքի սկզբունքների ու ձևերի հաստատումը:

Այդ քաղաքականության հետևողական իրականացմամբ ձեռք է բերվել հասուն սոցիալիզմի հոգևոր աշխարհի միասնության հետագա ամրապնդում: Այժմ հասուն սոցիալիզմի հոգևոր աշխարհի միասնության զարգացման բարձր մակարդակի վառ դրսևորումն է ողջ ժողովրդի միահամուռ պաշտպանությունը ՍՄԿԿ-ի ստեղծարար ներքին և խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը:

Սոցիալիզմի հոգևոր կյանքի միասնության զարգացման նոր փուլը գոյու-

լինում է կապիտալիստական երկրներում։ Սոցիալիզմի օրոք այդպիսի պրոբլեմ չկա։ Բայց կա միլիոնավոր մարդկանց նոր վայրերում, այդ թվում երկրի Հյուսիս և Հյուսիս-արևելքի սակավ յուրացված շրջաններում աշխատանքի տեղավորելու ռեալ պրոբլեմը։ Այստեղ ծագում են, ավելի ճիշտ՝ ավելի ցցուն կերպով երևան են գալիս հասարակական և անձնական շահերի միջև եղած ռեալ հակասությունները, որոնք կարելի է և պետք է հաղթահարել նաև բարոյական դաստիարակության ուժեղացմամբ։

Հակասությունների երրորդ խումբը կապված է ԳՏՀ-ի իրականացման գործում գիտատեխնիկական մտավորականության զբաղեցրած տեղի ու դերի գնահատման նկատմամբ հետևողական դասակարգային մոտեցման հետ։ Այդ մտավորականության, հատկապես բնության օրենքների, նոր տեխնոլոգիական պրոցեսների հայտնագործման մեջ «մեծ գիտության» ներկայացուցիչների օբյեկտիվորեն ռեալ ու հարաճուն դերը գիտության և տեխնիկայի գործիչների մի որոշ մասի շրջանում ծնում է տեխնոկրատական հայացքներ ու պոզիտիվիստական տրամադրություններ։ Իսկ դա հանգեցնում է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում բանվոր դասակարգի առաջատար դերի անտեսման, բոլոր բնական և հասարակական գիտությունների համար կոմունիստական աշխարհայացքի մեթոդոլոգիական որոշիչ դերի ժխտմանը։

Նման տեխնոկրատական հայացքներն իրենց «տեսական» հիմնավորումն են գտել մեր որոշ սոցիոլոգների աշխատություններում, որոնք հռչակել են բանվոր դասակարգի առաջատար դերի բացասումը և այդ դերի անցումը գիտատեխնիկական մտավորականությանը։ Որպես կանոն, այդ բանն արվում է պրիմիտիվ գործողության՝ մտավորականությանը բանվոր դասակարգի մեջ «մտցնելու» և նրան որպես առաջատար ուժ հռչակելու միջոցով։

Այստեղ ևս յուրահատուկ ձևով դրսևորվում է հակասությունը սովետական ողջ ժողովրդի (որի առաջատար ուժն է բանվոր դասակարգը, իսկ քաղաքական ու գաղափարական ղեկավարը՝ կոմունիստական կուսակցությունը) մեր մտավորականության առանձին ներկայացուցիչների անձնական, սուբյեկտիվ հայացքների ու տրամադրությունների միջև։ Այդ հակասությունը կուսակցությունը հաղթահարում է սովետական մտավորականության բոլոր ներկայացուցիչների կոմունիստական, այդ թվում և բարոյական դաստիարակությամբ, բանվոր դասակարգի պատմական միսիան իրականացնելու համար նրան օգնելու գործում մտավորականության իրոք հարաճուն դերի բացահայտմամբ։

Այնուհետև, սոցիալիզմի առավելությունները լրիվ օգտագործելու համար լուրջ խոչընդոտ է մարդկանց կարգապահության, բարոյա-հոգեբանական և այլ հատկությունների նկատմամբ ԳՏՀ-ի ներկայացրած աճող պահանջների և մարդկանց որոշ մասի, այդ թվում և երիտասարդության մի մասի ոչ բավարար բարձր բարոյական մակարդակի միջև եղած հակասությունը, որը կոնկրետ կերպով արտահայտվում է անկարգապահության, անկազմակերպվածության, աշխատանքի նկատմամբ ոչ բարեխիղճ վերաբերմունքի, ամենաբարդ ու թանկարժեք մեխանիզմների ու ապարատների նկատմամբ ոչ խնայողական վերաբերմունքի փաստերում և այլն։ Բավական է ասել, որ առանձին ձեռնարկություններում ներհերթափոխային ու ցերեկային պարապուրդները հասնում են ամբողջ աշխատաժամանակի 15—20 տոկոսին։ Սա այնպիսի լուրջ պրոբլեմ է, որ ՀամԼԿԵՄ Կենտկոմը հայտարարել է «Կոմերիտական լուսարձակի» ջոկատների, շտաբների, պոստերի համամիութենական ստուգայց՝ աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և աշխատաժամանակի կորուստները վերացնելու համար։ Մենք պետք է լավ յուրացնենք, որ ԳՏՀ-ի, սոցիալիզմի առավելությունների հետ նրա օրգանական միացման գլխավոր արդյունքն է լինելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիզմին անցնելու համար տնտեսական նախադրյալների նախապատրաստումը։ Բայց այդ անցումը կարող է ձգձգվել, եթե միաժամանակ չնախապատրաստվի նոր, համակողմանիորեն զարգացած մարդը, որի համար աշխատանքը լինելու է ո՛չ միայն կենսամիջոց, այլև առաջին կենսական պահանջմունք, իսկ անձնական և հասարակական շահերի ներդաշնակ զուգակցումը տեղի է ունենալու



անձնական շահերը գիտակցաբար հասարակական շահերին ստորադասելով։

Կոմունիստական հասարակարգի համակողմանիորեն զարգացած անհատների բարոյական դաստիարակության տեսական պրոբլեմների մշակման գործում մենք պետք է մարքսիզմի անխախտ սկզբունքների պահպանումը զուգակցենք առանձին ֆորմուլաների ճշգրտման հետ, կյանքի, հասարակության կոմունիստական նորացման անմիջական պրակտիկայի նոր պահանջների հաշվառման հետ։ Առանց այդպիսի մոտեցման չկա և չի կարող լինել մարքսիզմի ստեղծագործական զարգացում։ Բարոյական դաստիարակության հիմնական պրոբլեմներից մեկը հասարակականի ու անձնականի համաձայնեցման եղանակների ու ձևերի հարցն է։

Ինչպես հայտնի է, Կոմունիստական կուսակցության մանիֆեստում Մարքսը և Էնգելսը գրել են, որ պրոլետարիատը կոչված է ստեղծելու այնպիսի մի հասարակարգ, «որում յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 447)։ Բայց այստեղից չի բխում, թե մարքսիզմի հիմնադիրները ժխտում էին հասարակական հարաբերությունների դերն անհատի ձևավորման ու զարգացման պրոցեսում։ Լենինը, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը, առանձնապես իր հետհոկտեմբերյան աշխատություններում, ամենից առաջ երիտասարդության միության խնդիրների մասին արտասանած ճառում, ցույց է տվել, որ ամբողջ նոր հասարակության ազատագրումն ու համակողմանի ազատ զարգացումը նրա յուրաքանչյուր անդամի, յուրաքանչյուր առանձին մարդու ազատ ու ներդաշնակ զարգացման պայմանն է։

Այս դիալեկտիկա-մատերիալիստական գաղափարը բացառիկ ուժով արտահայտված է հասարակության հեղափոխական վերակերտման պրոցեսում ժողովրդական զանգվածների, դասակարգերի, կուսակցությունների և անհատների հարաբերակցության վերաբերյալ լենինյան հանճարեղ ֆորմուլայի մեջ։ Առանց ժողովրդական զանգվածների, հեղափոխական դասակարգերի և կուսակցությունների ստեղծագործական ու վճռական դերն ընդունելու չի կարելի ճիշտ հասկանալ ու մշակել կոմունիստական անհատի բարոյական դաստիարակության պրոբլեմը։ Լենինի այդ սկզբունքային դրույթը ցայտուն կերպով բացահայտում է հասարակականի ու անձնականի հարաբերակցությունը։

Անձնականն առաջին, իսկ հասարակականը՝ երկրորդ պլանում դնելը բարոյականության պրոբլեմների շատ հետազոտողների բնորոշ սխալն է։ Անհատի, նրա հարաբերական ինքնուրույնության ցուցադրման, նրա հոգևոր աշխարհի ու սոցիալական ակտիվության բացահայտման պրոբլեմների մշակման գործում ձեռք բերված մեծ հաջողությունների հետ միասին, մենք պետք է ընդունենք անհատի «ինքնավարության», հասարակական զարգացման արմատական խնդիրներից, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հիմնական համաժողովրդական պրոբլեմներից կտրված նրա ուսումնասիրման սխալ տենդենցի առկայությունը։

Նման սխալները ակամա կարող են յուրատեսակ «տեսական բազա» ստեղծել անհատի աբստրակտ ազատության, «ընդհանրապես ազատության» անարխիստական և վոլյունտարիստական պահանջների համար, որոնք անտեսում են սոցիալիստական կարգի ամրապնդման ու զարգացման արմատական շահերը, մի կարգ, որն ունակ է ապահովել, ինչպես սովորեցնում է մարքսիզմ-լենինիզմը, ամբողջ ժողովրդի և յուրաքանչյուր առանձին անհատի լիակատար բարեկեցությունը։

Համաժողովրդական և անձնական շահերի հարաբերակցության իսկական լենինյան ըմբռնումն է միայն համապատասխանում նոր հասարակարգի հոգևոր աշխարհի հետագա զարգացման պահանջմունքներին։

# ԿԱՆՏԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ

Լ. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՎԵՐՋԻՆ ՏԱՍՆԱՄՅԱԿՆԵՐԻՆ արևմտյան գրականության մեջ Կանտի փիլիսոփայության նկատմամբ դրսևորվել է հաճախ բավական սառը, իսկ երբեմն նաև խիստ բացասական վերաբերմունք։ Այսպես, Բերտրան Ռասելը, XX դարի արևմտաեվրոպական փիլիսոփայության ճանաչված հեղինակություններից մեկը, առանց այլևայլությունների գրել է. «Ընդունել Կանտը սովորաբար դիտվում է որպես նոր ժամանակի մեծագույն փիլիսոփաներից մեկը։ Ես չեմ կարող համաձայնել այդպիսի գնահատականին...» (Б. Рассел. История западной философии. М., 1959, стр. 721)։ Շվեյցարացի կանտագետ Մ. Աեբին պնդում է, որ «...Փորձի կանտյան տեսությունը էական կետերում ժխտվել է ճշգրիտ գիտությունների նորագույն զարգացմամբ և որ պրոբլեմների նրա դրվածքները այսօրվա գիտության համար այլևս հրատապ չեն» (M. Aebi. Kant's Begründung der „Deutschen Philosophie“. Basel, 1947, S. 23)։ Նեոպոզիտիվիզմի աչքի ընկնող պարագլուխներից մեկը՝ Հ. Ռայխենբախը, Կանտի մասին գրել է. «Նրա փիլիսոփայությունը ոչինչ չունի ասելու մեզ՝ Էյնշտեյնի ու Բորի ֆիզիկայի ժամանակակիցներիս»։ (H. Re chenbach. The Rise of Scientific Philosophy. Ber‑eley and Los Angeles, 1959, p. 44) ։

Արդարացի՞ են արդյոք այս դատողությունները։ Կարելի՞ է արդյոք համաձայնել, որ գիտական իմացության և հասարակական կյանքի նորագույն զարգացումն ընդհանրապես Կանտի փիլիսոփայությունը զրկել է ամեն մի նշանակությունից, և որ ժամանակակից մտածողության համար այն ոչ մի հետաքրքրություն չի ներկայացնում։ Անհրաժեշտ է ամենայն որոշակիությամբ շեշտել, որ մարքս-լենինյան ուսմունքը վճռականորեն դեմ է կանտյան ժառանգության նման գնահատականին, ինչպես նաև դասական փիլիսոփայական ժառանգության նկատմամբ նման վերաբերմունքին։ Այդ բանում համոզվելու համար դիմենք Վ. Ի. Լենինի այն աշխատություններին, որոնցում տրվում են գերմանական կլասիկ փիլիսոփայության հիմնադրի փիլիսոփայական ուսմունքի վերլուծությունն ու գնահատականը։

Վ. Ի. Լենինի՝ Կանտի փիլիսոփայությանը նվիրված ողջ աշխատանքը, ժամանակագրական տեսակետից կարելի է բաժանել երեք հիմնական շրջանների։ Առաջինը սիբիրյան աքսորի ժամանակաշրջանն է (1897—1900 թթ.), երբ Վ. Ի. Լենինն առաջին անգամ ներգրավվեց կանտյան փիլիսոփայության նշանակության ու արժեքավորության մասին ծավալված բանավեճում։ Երկրորդը՝ (1908 թ.) համընկնում է Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունը նախապատրաստելուն և գրելուն, որտեղ հատուկ բաժին է նվիրված կանտյան ուսմունքի վերլուծությանը։ Եվ երրորդը Շվեյցարիայում՝ Բեռնում անցկացրած կյանքի տարիներն են (1914—1915 թթ.), երբ աշխատելով դիալեկտիկայի տեսության հարցերի վրա, Վ. Ի. Լենինը վերստին դիմել է փիլիսոփայական մտքի կլասիկներին՝ ամենից առաջ Հեգելին, իսկ նրա միջոցով և Կանտին։



Առաջին ժամանակաշրջանի վերաբերյալ տեղեկությունները, ցավոք, բավական սուղ են։ Սակայն պահպանված վկայությունները որոշակիորեն Պայքարելով մարքսիզմի նեոկանտական ռեակցիայի դեմ, Վ. Ի. Լենինը վճռականորեն առարկում էր այն տեսակետի դեմ, թե իբր մարքսիստական տեսությունը պետք է «լրացվի» Կանտի իմացաբանական և բարոյագիտական ուսմունքով (տե՛ս А. Шаповалов. В сибирской ссылке. Сб. «Воспоминания о Владимире Ильиче Ленина», т. 1. М., 1956, стр. 181)։ Պայքարելով մարքսիզմի նեոկանտական ռևիզիայի դեմ, Վ. Ի. Լենինը հետևողականորեն վիճաբանությունների մասնակիցների ուշադրությունը հրավիրում էր Կանտի փիլիսոփայության այն կողմերի վրա, որոնք անհամատեղելի էին դարձնում կանտյան և մարքսիստական աշխարհայացքների կարևորագույն սկզբունքները։ Նա հետևողականորեն մերժում էր սոցիալիզմի պատմա-մատերիալիստական հիմնավորումը նրա իդեալիստական («բարոյագիտական») մեկնաբանումով փոխարինելու բոլոր փորձերը։

Երկրորդ ժամանակաշրջանում ուժեղացել էր կանտյան փիլիսոփայության այն քննադատությունը, որ վարում էին սուբյեկտիվ իդեալիզմի և ծայրահեղ սկեպտիցիզմի դիրքերից, բերկլիականության և յումիզմի տեսակետից։ Կանտի ուսմունքի գնահատմանը հենց այդ դիրքերից էլ մոտենում էին այն ժամանակ ամենամոդայիկ փիլիսոփայական հոսանքի պարագլուխներ է. Մախը և Ռ. Ավենարիուսը։ Բացահայտելով սոցիալ-դեմոկրատիայի մի քանի գործիչների ընտրած ուղու սխալականությունը, Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ նրանք «...գնացին փիլիսոփայության մեջ ռեակցիոն ուղղության հետևից, Մախի և Ավենարիուսի հետևից, որոնք Կանտին քննադատում էին յումիստական և բերկլիական տեսակետից» (Երկեր, հ. 14, էջ 267)։

Այստեղ կարող է հարց ծագել. ո՞րն էր այդ քննադատության էությունը. եթե ինքը՝ Կանտը, ինչպես դա լավ հայտնի է, ագնոստիցիզմի աչքի ընկնող ներկայացուցիչներից է։ Մի՞թե Յումի սկեպտիցիզմը և Կանտի ագնոստիցիզմը չեն պատկանում այն նույն հոսանքին, որը քարոզում է աշխարհի անճանաչելիության ուսմունքը։ Եվ իրոք, մի՞թե Վ. Ի. Լենինը նույն Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ չէր խոսում «Յումի և Կանտի գծի» մասին՝ որպես միասնական գծի։ Իրոք, Վ. Ի. Լենինը այդ մասին գրել է մի քանի անգամ (տե՛ս նույն տեղը, էջ 128, 142, 158, 209 և այլն)։ Սակայն դրա հետ մեկտեղ՝ Յումի և Կանտի փիլիսոփայական հայացքների միջև Վ. Ի. Լենինը տեսնում էր ո՛չ միայն ընդհանրություն, այլև տարբերություն (տե՛ս նույն տեղը, էջ 122—123, 142, 158, 266 և այլն). Նա իր գաղափարական հակառակորդներից մեկին կշտամբում էր այն բանի համար, որ նա կանտականությունը շփոթել է յումիզմի հետ (տե՛ս նույն տեղը, էջ 135)։

Հասկանալի է, որ մտածողության դիալեկտիկական եղանակի համար այստեղ ոչ մի հակասություն չկա, քանզի ընդհանրությունն ամենևին չի բացառում տարբերությունը։

Վ. Ի. Լենինը վերանում էր Յումի և Կանտի հայացքների միջև եղած տարբերություններից այն բոլոր դեպքերում, երբ նա ագնոստիցիզմը դիտում էր ամբողջության մեջ, նրա հիմնական ու որոշիչ գծերով, երբ ագնոստիցիզմին, ընդհանուր առմամբ, հակադրվում էր մատերիալիզմի իմացության տեսությունը։ Ագնոստիցիզմի և հետևողական մատերիալիզմի միջև գոյություն ունեցող այդ արմատական հակադրության տեսակետից ագնոստիցիզմի ներսում դրսևորվող տարբերությունները, ինչպես Վ. Ի. Լենինն էր գտնում, պետք է համարվեն երկրորդական և ոչ էական տարբերություններ։ Այստեղ նա հետևում էր ագնոստիցիզմի էնգելսյան քննադատության մեթոդոլոգիային, երբ, նրա բացատրության համաձայն (տե՛ս նույն տեղը, էջ 157), առաջին պլանի վրա էր դրվում այն, ինչ ընդհանուր է Յումի և Կանտի համար, և ոչ թե այն, ինչ բաժանում է նրանց։

Սակայն, նոր պայմաններում, երբ բուրժուական փիլիսոփայության մեջ

*լոր ձևերի աղբյուրը։ Իսկ գիտակցությունը, ըստ նրա, զգայականությունն է (ժամանակն ու տարածությունը) և մտածողությունը (կատեգորիաները, հիմնադրույթները, այդ թվում և պատճառականության սկզբունքը)։ Պարզ է, որ կանտյան մտքի զարգացման այդ գիծը, որը գիտակցության ձևերը կտրում է օբյեկտիվ-ռեալ կեցության ձևերից, իդեալիզմի գիծ է։ Վ. Ի. Լենինը նշում էր. «Տարածության, ժամանակի, պատճառականության և այլնի ապրիորությունն ընդունելով, Կանտն իր փիլիսոփայությունն ուղղում է դեպի իդեալիզմ» (*Երկեր*, հ. 14, էջ 257)։ Այս իմաստով ապրիորիզմն ընդհանրապես և, կանտյան ապրիորիզմը՝ մասնավորապես մի ուղի է, որ անխուսափելիորեն տանում է դեպի իդեալիզմ։*

*Սակայն, սխալ կլիներ գործն այնպես ներկայացնել, թե իբր Կանտի ապրիորությունն իր մեջ ոչ մի ռացիոնալ մոմենտ չի պարունակում, և ոչ մի ռեալ հիմք չունի։ Նման մակերեսային հայացքից նախազգուշացնում է Վ. Ի. Լենինի դիտողությունն այն մասին, որ իդեալիզմն ընդհանրապես չի կարելի գնահատել որպես մի դատարկ մտացածին բան, որ իդեալիզմը, իհարկե, անպտուղ ծաղիկ է, բայց, մի անպտուղ ծաղիկ, որը բուսնում է իմացության կենդանի ծառի վրա (տե՛ս, *Երկեր*, հ. 38, էջ 460—461)։*

*Վերլուծելով Կանտի փիլիսոփայությունը, ինչպես նաև այն վերաբերմունքը, որ նրա նկատմամբ ցուցաբերել են փիլիսոփայական տարբեր դպրոցներն ու հոսանքները, Վ. Ի. Լենինը մասնավորապես ուշադրություն է դարձրել այն ուշագրավ հանգամանքի վրա, որ յումիստական և բերկլիական քննադատությունը հարց էր դնում կանտյան ուսմունքը «զտել» ոչ միայն «ինքնին իրից» (նրա մատերիալիստական ըմբռնմամբ), այլև* ապրիորիզմից *(տե՛ս *Երկեր*, հ. 14, էջ 254)։ Բնականաբար, հարց է ծագում. վերջին հաշվով, կանտյան ապրիորիզմում ի՞նչը դուր չի եկել այդ քննադատությանը։*

*Բանն այն է, որ XVII—XVIII դարերում գիտելիքի ապրիորություն ասելով հաճախ ենթադրում էին նրա համընդհանրությունը և անհրաժեշտությունը, քանի որ գտնում էին, որ միայն ապրիորությունը կարող է երաշխավորել գիտելիքի նման արժանիքները։ Այն էական նորը, որ այդ պրոբլեմի ըմբռնման մեջ ներդրել է Կանտը, այն էր, որ ձևական տրամաբանության օրենքների վրա հիմնված անալիտիկ ապրիորիից բացի գոյություն ունի ոչ ձևական, հետևաբար և բովանդակալից,* սինթետիկ *ապրիորի։ Իսկ դա նշանակում է, որ կանտյան ուսմունքի տեսակետից համընդհանրությունն ու անհրաժեշտությունը ո՛չ միայն, վերջին հաշվով, տրամաբանական տավտոլոգիաների հանգող ձևական գիտելիքի, այլև բովանդակալից բնույթի գիտելիքի, այլ կերպ ասած՝ փաստերի մասին գիտելիքի արժանիքներն են։ Այդ առնչությամբ Վ. Ի. Լենինը պարզաբանում էր, որ հենց դա էլ անընդունելի էր յումիզմի ու բերկլիականության նորագույն հետևորդների համար. նրանք Կանտին քննադատում էին այն բանի համար, որ նա ենթադրում է թեկուզ որևէ պատճառականություն ու անհրաժեշտություն (թերևս բացի զուտ «տրամաբանականից») (տե՛ս *Երկեր*, հ. 14, էջ 259)։*

*Հետաքրքրական է, որ XX դարի կեսերին ևս պոզիտիվիզմը, «տրամաբանական էմպիրիզմի» ստադիայում, Կանտին քննադատում էր ճիշտ նույն բանի համար։ Այդ դպրոցի պարագլուխներից մեկը, Ռ. Կարնապը, էմպիրիզմի էությունը բնորոշելով Կանտի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով, գրում էր. «...էմպիրիզմը կարելի է բնորոշել որպես մի տեսակետ, որը ժխտում է սինթետիկ ապրիորային գիտելիքի գոյությունը» (*Р. Карнап. Философские основания физики. Введение в философию науки. М., 1958, стр. 245)։ *Մեր դարի 50—60-ական թվականներին այդ հարցի շուրջ ծավալված աշխույժ վիճաբանությունները ցույց տվեցին, որ այստեղ Կանտը անհամեմատ բարձր է ժամանակակից նեոպոզիտիվիստներից, քանի որ նրա ուսմունքը սինթետիկ ապրիորիի մասին պահանջում էր համընդհանուր ու անհրաժեշտ ճանաչել ո՛չ միայն ձևական (տրամաբանական), այլև բովանդակալից գիտելիքը։ Սա էլ հենց կանտյան ապրիորիզմին հատուկ այն ռացիոնալ մոմենտներից մեկն է, որ Վ. Ի. Լենինը պաշտպանում էր հարձակումներից։*



*Ամփոփելով, կարելի է ասել, որ, Կանտի փիլիսոփայության լենինյան գնահատականի համաձայն, մատերիալիզմի և իդեալիզմի միջև պայքարի գիծը իրոք անցնում է այնպիսի կարևորագույն հասկացությունների «միջով», ինչպիսիք են «ինքնին իրը» և «ապրիորին»։ Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ Կանտը ձգտում էր փիլիսոփայության այդ երկու հիմնական ուղղությունների միջև կոմպրոմիսի հասնել, ըստ էության, իր «ինքնին իրի» գոյության մասին բուն ուսմունքի մեջ և իմացության ձևերի ապրիորի բնույթի մասին տեսության սահմաններում։*

*Հասկանալի է, որ կանտյան փիլիսոփայության այդքան խոր հակասականության հետևանքով նրա և ոչ մի «մասը», բնականաբար, չէր կարող փոխադրվել մարքս-լենինյան ուսմունքի մեջ՝ առանց լուրջ քննադատական իմաստավորման։ Վ. Ի. Լենինը, մատնանշելով գործի այդ քննադատական կողմը, շեշտում էր. «...Ֆոյերբախի, Մարքսի և Էնգելսի ամբողջ դպրոցը Կանտից գնաց դեպի ձախ, դեպի ամեն մի իդեալիզմի և ամեն մի ագնոստիցիզմի լիակատար ժխտում» (*Երկեր*, հ. 14, էջ 267)։*

*Դրա հետ մեկտեղ, քննադատական վերաբերմունքը Կանտի փիլիսոփայության նկատմամբ ընդհանուր ոչինչ չունի «ուլտրաձախ» նիհիլիզմի հետ, Հերբերտ Մարկուզեի ոգով տխրահռչակ «մեծ ժխտման» հետ։ Վ. Ի. Լենինը բազմիցս նախազգուշացրել է անցյալի գաղափարական ժառանգության նկատմամբ կանխակալ, «պրոլետկուլտական» սխալ վերաբերմունքի առթիվ։ Հիշատակելով «փիլիսոփայական մեծ տրադիցիան», որի վրա իր ծագման շրջանում հենվում էր մարքսիզմը, Վ. Ի. Լենինը գրել է, որ Գերմանիայում այն կապված է եղել «...կլասիկ փիլիսոփայության դարաշրջանի հետ՝ Կանտից սկսած մինչև Հեգել ու Ֆոյերբախ» (*Երկեր*, հ. 17, էջ 72)։*

*Կանտի փիլիսոփայության լենինյան վերլուծությունը, որը բացահայտում է դրա հակադիր տենդենցները, հեռու է միակողմանիությունից։ Կուսակցական ուղղվածությունը, որը բացառում է որևէ նահանջ սեփական սկզբունքներից, այդ վերլուծության մեջ օրգանապես զուգակցվում է կլասիկ ժառանգության նկատմամբ ուշադիր ու հոգատար վերաբերմունքի հետ, մի վերաբերմունք, որն այնքան բնորոշ է համաշխարհային կուլտուրայի իսկական ժառանգորդներին։*




# ԴՊՐՈՑԸ ԵՎ ԱՇԱԿԵՐՏՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ս. Տ. ՀԱԽՈՒՄՅԱՆ
Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱԴՐԱԾ վիթխարի պլաններում առավել կենսական ու հրատապ պրոբլեմներից մեկը աճող սերնդի կրթության ու դաստիարակության բարդ ու բազմաբովանդակ խնդիրն է։ Այսօր, երբ մեր երկիրը կյանքի տարբեր բնագավառներում անընդհատ նվաճում է նորանոր բարձունքներ և վստահ քայլերով ընթանում դեպի լուսավոր ապագան, առավել ակնհայտ է դառնում դպրոցի դերը։ Եվ այդ շատ բնական է ու օրինաչափ, քանզի դպրոցն այն կենդանի օրգանիզմն է, հասարակական կյանքի այն ամենազգայուն համակարգը, որը կոչված է մշտապես գտնվելու կյանքի ավանգարդում։

Հիրավի, դպրոցում են դրվում մեր կյանքի հիմքերը. Նրա աշխատանքային եռուն առօրյայում, մշտական ու կենարար գործունեության պրոցեսում է ձևավորվում այն սերունդը, որը դառնալու է մեր ապագայի լիիրավ կերտողը։

Սովետական դպրոցը մեծ Հոկտեմբերի ծնունդն է, Վ. Ի. Լենինի, կոմունիստական կուսակցության ամենահաղթ գաղափարների սերմանողը։ Մեր վաթսունամյա աննախադեպ նվաճումներում իր արժանի տեղն ունի դպրոցը՝ մարդու դաստիարակության դարբնոցը։

Նախասովետական Հայաստանում ինը և դրանից բարձր տարիքի բնակչության ավելի քան 90 տոկոսն անգրագետ էր։ 1914—15 ուսումնական տարում Հայաստանում գործում էին 7 միջնակարգ, 6 յոթնամյա և 446 տարրական դպրոցներ, որտեղ սովորում էր ընդամենը 34.738 աշակերտ։ Ուսուցիչների թիվը չէր անցնում 1.146-ից, որոնց ճնշող մեծամասնությունն ուներ թերի միջնակարգ կրթություն։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո նորաստեղծ սովետական երկիրը ձեռնամուխ եղավ քայքայված տնտեսության վերականգնմանը, բարենպաստ պայմաններ ստեղծվեցին ժողովրդական կրթության, գիտության ու մշակույթի զարգացման համար։ Կատարվեց խոշորագույն կուլտուրական հեղափոխություն, ստեղծվեց կրթության ամենաառաջադիմական ու իսկական դեմոկրա-



տական սիստեմ, աննախադեպ ծաղկեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթը, որը աշխատավոր զանգվածներին դուրս բերեց հոգեկան ստրկությունից ու դարավոր խավարից, նրանց համար լայն ճանապարհ բացվեց դեպի գիտությունն ու արվեստը։

Եվ այս բոլորը կոմունիստական կուսակցության ղեկավարության, լենինյան ազգային քաղաքականության արգասիքն է։

Սովետական կարգերի հաստատման հենց առաջին օրերից կուսակցությունն առաջնահերթ խնդիր համարեց հանրապետությունում պարտադիր տարրական, իսկ հետագայում՝ յոթնամյա և ութնամյա ուսուցումը։ Դպրոցահասակ բոլոր երեխաների ձրի ուսուցումը հնարավորություն ընձեռեց Հայաստանին դառնալու համատարած գիտության հանրապետություն։

Մեր կուսակցությունն ու ժողովուրդն ստեղծել և ստեղծում են անհրաժեշտ բոլոր պայմանները երկրում ժողովրդական կրթության հետագա զարգացման ու կատարելագործման համար։ Ահա թե ինչու դպրոցական գործը մեզ մոտ իրավամբ դարձել է համաժողովրդական, համակուսակցական։

Վերջին տարիներին սովետական դպրոցն ապրել է որակական լուրջ փոփոխություններ, որոնք նոր նախադրյալներ են ստեղծում դաստիարակության կոմպլեքսային հարցերի լուծման համար։ Այսօր մենք օրինական հպարտությամբ ենք նշում ժողովրդական լուսավորության բնագավառում մեր ժամանակի խոշորագույն նվաճման՝ համընդհանուր միջնակարգ կրթության իրականացման փաստը։ Դեռևս աշխարհի ոչ մի երկիր չի կարողացել հասնել նման բարձունքի։

Ինչպես ողջ երկրում, նույնպես և մեր հանրապետությունում, համընդհանուր միջնակարգ կրթության և դրա կարևոր օղակի՝ 8-ամյա պարտադիր ուսուցման իրականացման մարզում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել հատկապես իններորդ հնգամյակի տարիներին։ Այժմ մեր հանրապետությունում գործում են հանրակրթական 1.349 ցերեկային դպրոցներ, որոնցից 890-ը՝ միջնակարգ, մոտ 630 հազար աշակերտներով։ Գոհունակությամբ պետք է նշել, որ միջնակարգ դպրոցներում սովորողները կազմում են աշակերտության ընդհանուր թվի մոտ 90 տոկոսը։ Վերջին տարիներս զգալի գործ է արվել նաև երեկոյան (հերթափոխային) և հեռակա դպրոցների՝ միջնակարգ կրթության լիակատար իրականացման այդ կարևորագույն օղակի, գործունեության բարելավման նպատակով։ Ընդարձակվել, ավելի ռացիոնալ է դարձել երեկոյան ուսուցման ցանցը, առավել արդյունավետ՝ ուսումնադաստիարակչական աշխատանքը։ Այժմ երեկոյան և հեռակա 131 դպրոցներում սովորում են 35 հազար երիտասարդներ։ Երկարօրյա դպրոցներում ու խմբերում ընդգրկված է 58 հազար աշակերտ։

Զգալի նվաճումներ են ձեռք բերել նաև ազգային փոքրամասնությունների դպրոցները։ Ներկայումս հանրապետությունում գործում են 154 ադրբեջանական դպրոցներ, որտեղ սովորում են 43.091 երեխաներ։ Երեխաների ինտերնացիոնալ դաստիարակության մի իսկական դարբնոց են ինտերնացիոնալ դպրոցները։ Այժմ մեզ մոտ գործում են հայ-ռուսական, հայ-ադրբեջանական, ռուս-ադրբեջանական, հայ-ռուս-ադրբեջանական 71 ինտերնացիոնալ դպրոցներ, որտեղ ուսանում են հայ, ռուս, ադրբեջանցի 34.023 աշակերտներ, որոնք մանկուց, համատեղ սովորելու տարիներին ծանոթանում են միմյանց կենցաղին ու սովորություններին, զգում բարեկամության ու մտերմության կենարար գեղեցկությունը։ Հանրապետությունում գործում են 21 գիշերօթիկ դպրոցներ՝ մոտ 7 հազար աշակերտով։ Հատուկ պայմաններ են ստեղծված ֆիզիկական արատ ունեցող երեխաների համար։ Այժմ մեզ մոտ I դասարան ընդունված յուրաքանչյուր 100 հոգուց 93-ը ժամանակին ավարտում է ութնամյան, իսկ 88-ը ստանում է միջնակարգ կրթություն։ Մեկ և կես անգամ ավելացել է միջնակարգ դպրոցների շրջանավարտների թիվը. 1971 թվականի 29.800-ի դիմաց 1976-ին X դասարանն ավարտել են 45.500 պատանիներ ու աղջիկներ։ Այս փաստերը վկայում են, որ հանրապետությունում հիմնականում ավարտվել է անցումը համընդհանուր միջնակարգ կրթության։

Վերջին տարիներս շատ բան է արվել հանրապետության դպրոցները բարձ-

ներին, որ նրանք կարողանան ինքնուրույն մտածել ու գործել, ինչպես հարկն է, օգտվել արդի գիտատեխնիկական ինֆորմացիայից, ճիշտ կողմնորոշվել հասարակական կյանքի բարդ ու հակասական երևույթներում։

Կուսակցության XXV համագումարում հստակ նշվեցին այս կարևոր խնդրի իրագործման կոնկրետ ուղիները։ «...ժամանակակից պայմանները,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— նոր խնդիրներ են դնում կուսակցության գաղափարական գործունեության առջև։ Կուսակցական կազմակերպությունների պրակտիկան մեզ հուշում է, թե որ ուղիով ընթանալով մենք կարող ենք հասնել այդ գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Դա կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն...» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Դաստիարակությունը բարդ ու բազմակողմանի, դինամիկ զարգացող պրոցես է, բազմաթիվ ու բազմապիսի օղակների մի շղթա, որտեղ յուրաքանչյուր օղակ, յուրաքանչյուր մանրուք ունի իր շատ կարևոր տեղն ու դերը։

Դաստիարակությունն սկսվում է ընտանիքից, որն ընդհանուր շղթայի սկզբնական օղակն է։ Այստեղ երեխան ստանում է իրականության, կյանքի առաջին տպավորությունները, ձեռք բերում աշխատանքային առաջին հմտությունները, տեսնում կոլեկտիվիզմի, ընկերասիրության առաջին օրինակները։ Պետք է նշել, որ ուսուցչի գործունեության էական օղակներից մեկը աշխատակցությունն է սովորողների ծնողների հետ, որտեղ առանձնապես կարևոր է դասղեկների՝ որպես դպրոցի և ծնողի անմիջական կապող օղակի դերը։ Չէ՞ որ կան բազմաթիվ և, հատկապես, երիտասարդ ընտանիքներ, որոնք օգտակար, սրտացավ խորհուրդների կարիք ունեն, կան և այնպիսի ընտանիքներ, ուր այնքան էլ առողջ ու խաղաղ չէ ընտանեկան մթնոլորտը։

Խոսելով աճող սերնդի դաստիարակության մասին՝ ընկեր Բրեժնևը կուսակցության համագումարում նշեց. «Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում։ Մենք այսուհետև ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը։ Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով։ Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Սա չի կարելի աչքաթող անել» (Նույն տեղը, էջ 116)։ Ցավոք, սովորողների որոշ մասի մոտ երբեմն երևան են գալիս անհոգության, խնամակալվելու, ծնողների կամ ազդեցիկ բարեկամների հովանու տակ պատսպարվելու, դժվարություններն ինքնուրույն հաղթահարելուց խուսափելու կամ դրանց առջև զինաթափվելու, կյանքը հեշտ ձևով «դասավորելու» տրամադրություններ, որոնք միանգամայն խորթ ու անհարիր են մեր ժամանակի ոգուն, մեր բարոյականության նորմերին ու ըմբռնումներին։ Սրանք լուրջ պրոբլեմներ են, որոնց կողքով դպրոցն ու հասարակայնությունը չեն կարող անտարբեր անցնել։

Անշուշտ միայն դպրոցը չի կարող լուծել այս բարդ ու բազմաբնույթ խնդիրները։ Նոր մարդու դաստիարակության պրոբլեմը պետք է մտահոգի բոլորին, որովհետև այն անհնար է վերապահել միայն ու միայն դպրոցին։ Նոր աշխարհ կառուցող սերնդի ձևավորմանը պետք է մասնակցեն ընտանիքը, դպրոցը և լայն հասարակայնությունը։ Մարդկանց որոշ մասի հոգեբանությունից ու վարքագծից, դժբախտաբար, դեռևս չեն վերացել ընչաքաղցությունը, եսասիրությունը, անպատասխանատվությունը, անտարբերությունը և շատ այլ արատավոր հատկանիշներ։ Մեր՝ բոլորիս առաջնահերթ խնդիրն է ամեն կերպ պայքարել այդ վնասակար երևույթների դեմ, կրթել ու դաստիարակել, ազնվացնել ու գեղեցկացնել մարդու հոգին, բարոյական կերպարը։

Անհրաժեշտ է, որ մեր ուսուցիչները սերտ կապ պահպանեն ծնողների հետ, տարվա ընթացքում պարբերաբար հրավիրեն ծնողական ժողովներ, ջերմ ու անկեղծ զրուցեն ծնողների հետ կրթության ու դաստիարակության արդի հարցերի շուրջ, հիմնավոր փաստերով վերլուծեն յուրաքանչյուր աշա-



կերտի գործունեությունն ու վարքագիծը, համատեղ ջանքերով որոնեն աշակերտների առաջադիմության բարձրացման, նկատված թերությունների վերացման ուղիներ։ Այս գործում մեծ է ծնողական ակտիվի դերը, որը կարող է դառնալ մանկավարժական կոլեկտիվի հուսալի օգնականն ու հենարանը։ Մանկավարժական կոլեկտիվների ու ծնողական ակտիվի համաձայնեցված ու համախմբված աշխատանքի կազմակերպման ավանգարդում են կոմունիստ մանկավարժները, որոնք անձնական օրինակով, բարեխիղճ ու պատասխանատու գործունեությամբ վարակում են գործընկերներին, դառնում նորի ու առաջավորի տարածողներ։ Երևանի Մյասնիկյանի շրջանի № 19, Շահումյանի շրջանի №№ 131, 155 միջնակարգ դպրոցների սկզբնական կուսակցական կազմակերպությունները խրախուսելի աշխատանք են կատարում մանկավարժական կոլեկտիվների համախմբման, սովորողներին սովետական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում։

Անհատի համակողմանի դաստիարակությանը մասնակցում են ընտանիքը, դպրոցը, մասսայական ինֆորմացիայի միջոցները, ողջ հասարակայնությունը։ Այս համակարգում ավելի ու ավելի է մեծանում դպրոցի կենտրոնական ու ղեկավար դերը։ Դպրոցը բնավ չպետք է անտեսի գրքի, կինոյի, թատրոնի, հեռուստատեսության ու մասսայական ինֆորմացիայի մյուս աղբյուրների դերն ու հնարավորությունները երեխայի դաստիարակության գործում, այն պետք է հնարավորին չափ խելացի, բանիմաց ու արդյունավետ օգտագործի դրանք։ Նման դժվարին խնդիրը, բնականաբար, կարող է լուծել միայն գիտության, տեխնիկայի ու արվեստի նորություններին խորապես քաջատեղյակ, զարգացած, մշտապես որոնող ու պատասխանատվության մեծ զգացում ունեցող ուսուցիչը։ Միայն նման ուսուցիչը կարող է ամբողջ ձայնով «խոսեցնել», իրենց նպատակին ծառայեցնել ժամանակակից տեխնիկան, նորագույն դասագրքերը, գործադրել ուսուցման նոր, արդյունավետ ձևերն ու մեթոդները։ Հենց այս է հաջողությունների հասնելու գաղտնիքը։

Այդ նորի ու առաջավորի տարածման գործում մեծ է ուսուցիչների կատարելագործման Երևանի քաղաքային և հանրապետական ինստիտուտների դերը, որոնք որոշակի աշխատանք են կատարում հանրապետության մանկավարժական կադրերի որակավորման բարձրացման, նրանց մանկավարժական վարպետության կատարելագործման ասպարեզում։ Ուսուցիչների կատարելագործումն իրականացվում է բազում ձևերով ու միջոցներով— տարբեր տիպի դասընթացներ, դասալսումներ, գիտագործնական համաժողովներ, առաջավոր փորձի ուսումնասիրում ու տարածում, մեթոդական գրականության հրատարակում։ Հանրապետությունում հաջողությամբ կիրառվում են կատարելագործման դասընթացների՝ համընդհանուր ճանաչում գտած շատ ձևեր։ Արտադրությունից կտրված ու չկտրված, ամառային ու առկա-հեռակա դասընթացներում տարեկան ընդգրկվում են 10—11 հազար մանկավարժներ։

Տարիների ընթացքում կատարած հետևողական աշխատանքի շնորհիվ ուսուցիչների կատարելագործման հանրապետական ինստիտուտն ստեղծել է դասախոսական կայուն կազմ, որտեղ ընդգրկված են 12 ակադեմիկոսներ, 40 դոկտոր-պրոֆեսորներ, գիտության 80 թեկնածուներ և ավելի քան 120 տեսուչներ, մեթոդիստներ ու առաջավոր ուսուցիչներ։

Ինստիտուտը գիտամեթոդական արդյունավետ օգնություն է կազմակերպում նաև գրավոր խոսքի միջոցով։ Վերջին 5 տարում հրատարակվել և հանրապետության դպրոցներն են ուղարկվել շուրջ 100 անուն մեթոդական գրքեր։

Հանրապետության բոլոր շրջաններում ու քաղաքներում ստեղծված է առաջավոր փորձի դպրոցների լայն ցանց։ Գործող առաջավոր փորձի 400 դպրոցներում (տարբեր առարկաների) ընդգրկված են 3.500 ուսուցիչներ, որոնք ուսումնասիրում և իրենց աշխատանքում ստեղծագործաբար կիրառում են ավագ ու փորձառու գործընկերների ուսանելի փորձը։ Մանկավարժական առաջավոր փորձի դպրոցների շատ ղեկավարներ հանրապետությունում աչքի են ընկնում իրենց օրինակելի աշխատանքով. Պ. Լեոնովը (ռուսաց լեզու և գրականություն), Կ. Առուստամյանը (մաթեմատիկա), Է. Գրիգորյանը (աշխարհագրություն), Ս. Ներսիսյանը (պատմություն) և շատ ուրիշներ։

ցը։ պատասխանել են. Անգլիայում՝ հուշակը, նյութական ապահովվածությունը. Ֆրանսիայում՝ առողջությունը, դրամը և սերը, ԱՄՆ-ում՝ հաջողությունը, հարստությունը, փառքը. ՍՍՀՄ-ում՝ մաքուր խիղճը, պարտքը հայրենիքի հանդեպ, աշխատանքը և անձնական երջանկությունը։

Մեր կյանքի բուռն ընթացքը հրամայաբար պահանջում է մշտապես կատարելագործել կրթության ու դաստիարակության ողջ համակարգը, շտկել վրիպումներն ու նկատվող սխալները, որոնել ու գտնել նոր պրոբլեմների լուծման արդյունավետ ուղիներ։

«Կոմունիստական դաստիարակությունը,— նշեց ընկեր Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— ենթադրում է ժողովրդական կրթության և պրոֆեսիոնալ պատրաստության սիստեմի մշտական կատարելագործում։ Դա առանձնապես կարևոր է հիմա, գիտատեխնիկական հեղաշրջման պայմաններում։ Դա աշխատանքին, հետևաբար և աշխատանքի համար մարդու նախապատրաստմանը տալիս է այլ բնույթ, քան առաջ էր։ Մենք այդ տեսակետից շատ բան ենք անում։ Բայց այն, ինչ արվել է և արվում է, դեռևս չի լուծում այդ բնագավառի բոլոր խնդիրները։

Մասնավորապես, ակնբախ է ամբողջ հանրակրթական սիստեմի և, առաջին հերթին, միջնակարգ դպրոցի հետագա լուրջ կատարելագործման անհրաժեշտությունը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 115)։

Նոր ժամանակաշրջան, նոր խնդիրներ, հետևաբար և նոր վերաբերմունք։ Այս ամենի նկատմամբ բնավ անտարբեր չեն կարող լինել աճող սերնդի կրթությամբ ու դաստիարակությամբ զբաղվող գործիչները։

Հիրավի, ամենքիս մտահոգության կիզակետը միշտ եղել և մնում է մատղ սերունդը, ապագա քաղաքացին՝ իր հոգեկան բարդ աշխարհով, վեհ ու խոր զգացմունքներով, խոհերով ու ձգտումներով, իր պայծառ ներկայով ու գալիքի վառ երազանքներով։

Մոտենում է արժանահիշատակ հոբելյանը՝ մեծ Հոկտեմբերի 60-ամյակը, հասարակական-քաղաքական նշանակալից մի իրադարձություն, մեր սոցիալիստական հասումների հանրագումարային տարելիցը։ Այդ նվիրական տարեթիվը մեծ խանդաղատանքով նշում են նաև մեր ժողովրդական դպրոցի սաները, ուսուցչությունը, կրթության համակարգի բոլոր աշխատողները։ Իրոք, նվաճած բարձունքից հետադարձ հայացք ձգելով մեր անցած ուղու վրա, օրինական հպարտությամբ կարող ենք վստահ ասել, որ սովետական դպրոցը քայլում է կյանքին համընթաց, համալրելով կոմունիզմի կառուցողների ջոկատները գիտակ ու դաստիարակված նորանոր սերունդներով։

---

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-ՈՒՄ

**Մ. Հ. ԱԴՈՆՑ**
Տնտեսագիտության դոկտոր

ԱՐՏԱԴՐԱՈՒԺԵՐԻ ՌԱՑԻՈՆԱԼ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ, միութենական հանրապետությունների և տնտեսական շրջանների արտադրության մասնագիտացումն ու կոմպլեքսային զարգացումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն պայմաններից են։

Աշխատանքի տերիտորիալ բաժանումը տնտեսական շրջանների միջև՝ դրանց բնակլիմայական ու սոցիալ-տնտեսական առանձնահատկություններին համապատասխան, տնտեսության ճյուղային կառուցվածքի կատարելագործումը և միջճյուղային ու միջշրջանային տնտեսական լավագույն կապերի հաստատումը նշանակալի չափով բարձրացնում են հանրային աշխատանքի արտադրողականությունը։

Սոցիալիզմի պայմաններում արտադրաուժերի տեղաբաշխումը պլանավորվում է, որի նպատակն է ժողովրդական տնտեսության արագ զարգացումն ու բնակչության կյանքի բարեկեցության բարձրացումը։ Սոցիալիզմին հատուկ է արտադրաուժերի համաչափ ու կոմպլեքսային զարգացումը։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության վարած քաղաքականության շնորհիվ համահարթվում է միութենական հանրապետությունների ու տնտեսական շրջանների զարգացման մակարդակը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո անճանաչելիորեն փոխվել է մեր երկրի ժողովրդական տնտեսությունը. «Արմատական տեղաշարժեր են կատարվել արտադրաուժերի բնույթի, կառուցվածքի ու տեղաբաշխման մեջ։ Սովետական իշխանության տարիներին հավասարվեց սովետական բոլոր հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակը» (Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից)։

Աշխատանքի հասարակական բաժանման ու արտադրության մասնագիտացման խորացման շնորհիվ առաջանում են արտադրության նորանոր ճյուղեր, և միջճյուղային կապերն ավելի են ընդլայնվում ու ամրապնդվում։ Ամբողջ երկրի մասշտաբով և յուրաքանչյուր տնտեսական շրջանում ստեղծվում են արտադրական-տնտեսական համալիրներ։

Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում տերիտորիալ արտադրական համալիրները դառնում են արտադրաուժերի տերիտորիալ կազմակերպման արդյունավետ ձև։ Ընդհանուր տերիտորիայում տեղադրված արտադրա-

համալիրը փոխադարձ տնտեսական ու տեխնոլոգիական կապ ունեցող ձեռնարկությունների և արտադրաճյուղերի մի ամբողջություն է։ Տերիտորիալ արտադրահամալիրում առավել զարգանում են նրա բնույթը որոշող արտադրության մասնագիտացված ճյուղերը, որոնց հետ համապատասխանորեն զարգանում են հարակից և օժանդակ ճյուղերն ու արտադրական, սոցիալական ինֆրակառուցվածքը (էլեկտրաէներգետիկ բազա, շինարարական ինդուստրիա, տրանսպորտ, ջրամատակարարում, պահեստային տնտեսություն, բնակարանային կոմունալ տնտեսություն, ժողովրդական կրթության ու առողջապահության ցանց և սոցիալ-կուլտուրական այլ հաստատություններ)։

Մասնագիտացման ուղղությունների ճիշտ ընտրությունը, կոոպերատիվ կապերի կատարելագործումը և ընդհանուր ինֆրակառուցվածքի օգտագործումը բարձրացնում են տերիտորիալ-արտադրական համալիրների տնտեսական արդյունավետությունը։ Ահա թե ինչու նոր կառուցվող ձեռնարկությունների տեղն ընտրելիս պետք է չափանիշ ընդունել դրանց հարաբերական արդյունավետությունը։ Ըստ որում, տարբեր արտադրությունների տնտեսական արդյունավետությունը որոշելիս նույն մոտեցումը չպետք է ունենալ. կան արտադրություններ, որոնք պետք է հիմնել հումքի աղբյուրներին մոտ, կամ էլ հարուստ էներգետիկ բազա ունեցող շրջաններում։ Որոշ արտադրություններ էլ նպատակահարմար է տեղադրել արտադրանքի սպառման, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների արագ աճ ունեցող շրջաններում։

Գոյություն ունեն տարբեր կարգի կամ մակարդակի տերիտորիալ-արտադրական համալիրներ (ՏԱՀ)։ Խոշոր համալիրներն ընդգրկում են տնտեսական մեծ շրջանների տերիտորիան։ Դրանցից են, օրինակ, Ուրալյան, Օբ—Իրտիշյան, Դոնեցկ—Մերձդնեպրովյան, Անդրկովկասյան տերիտորիալ-արտադրական համալիրները։ Երկրորդ կարգի համալիրները, օրինակ, Բրատսկի, Սայանսկի, Հարավ-Տաջիկականը, ընդգրկում են տնտեսական մեծ շրջանների մի մասը։ Կան նաև ստորին մակարդակի արտադրահամալիրներ։

Ժողովրդական տնտեսության տերիտորիալ կազմակերպման պրոցեսները չափազանց դինամիկ են։ Արտադրաուժերի զարգացման զուգընթաց կատարելագործվում են գործող համալիրները և, միաժամանակ, ձևավորվում նոր տերիտորիալ-արտադրական համալիրներ։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների մասին կուսակցության XXV համագումարի որոշմամբ նախատեսվում է «գոյություն ունեցող տերիտորիալ արտադրահամալիրների և արդյունաբերական հանգույցների զարգացում և նորերի ձևավորում՝ ընդհանուր կոմունիկացիաներով, ինժեներային կառուցվածքներով և օժանդակ արտադրություններով» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 330)։

Համագումարի որոշումներում թվարկվում են մի ամբողջ շարք արտադրահամալիրներ, որոնք նոր են կազմավորվում. միայն Բայկալ—Ամուր մայրուղու շրջաններում կստեղծվեն 6 տերիտորիալ-արտադրական համալիրներ։

Զարգացած սոցիալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում, երբ արտադրության մասշտաբները չափազանց ընդլայնվում են, ստեղծվում են բարձր արտադրողական աշխատանքի նոր միջոցներ ու տեխնոլոգիա, արհեստական հումքի նոր տեսակներ, ժամանակակից երկրաբանական հետազոտությունների միջոցով հայտնաբերվում են օգտակար հանածոների նոր օջախներ, արտադրաուժերի տեղաբաշխման բնագավառում կատարվում են սկզբունքային փոփոխություններ։

Հետզհետե բարդանում է արտադրաուժերի տեղաբաշխման պլանավորումը։ Ահա թե ինչու արտադրության տերիտորիալ կազմակերպման պրոբլեմները դառնում են գիտական հետազոտությունների կարևոր բնագավառներից մեկը։ Ինչպես մեր ամբողջ երկրում, այնպես էլ յուրաքանչյուր միութենական հանրապետությունում ու տնտեսական շրջանում արտադրաուժերի տեղաբաշխման բնագավառում կատարվել են արմատական փոփոխություններ։



ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ տարիներին հիմնովին վերափոխվել է Հայկական ՍՍՀ տնտեսական քարտեզը։ Նախահեղափոխական Հայաստանը ցարական Ռուսաստանի գաղութային ծայրամասերից մեկն էր, որն ուներ հետամնաց ագրարային տնտեսություն։

Խիստ անհամաչափ էր արտադրաուժերի տեղաբաշխումը ցարական Ռուսաստանում։ Արդյունաբերության գերակշռող մասը եվրոպական Ռուսաստանի մի քանի նահանգներում էր, իսկ Սիբիրն ու Հեռավոր արևելքը, ինչպես նաև ծայրամասային շրջանները զուրկ էին խոշոր արդյունաբերությունից։

Սովետական կարգերի հաղթանակի և սոցիալիզմի կառուցման շնորհիվ մեր երկրում առաջացան արտադրաուժերի տեղաբաշխման միանգամայն նոր օրինաչափություններ։ Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության վարած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ աննախընթաց վերելք ապրեցին միութենական բոլոր հանրապետությունների տնտեսությունն ու կուլտուրան, ավելի արագ տեմպերով զարգացավ նախկին հետամնաց շրջանների տնտեսությունը։

Սովետական բազմազգ ժողովրդի համերաշխ ընտանիքում ծաղկեցին ու բարգավաճեցին նաև Սովետական Հայաստանի տնտեսությունն ու կուլտուրան։ Բուռն կերպով զարգացավ հանրապետության արդյունաբերությունը, որի շնորհիվ պատմական կարճ ժամանակում Սովետական Հայաստանը դարձավ ինդուստրիալ-ագրարային զարգացած տնտեսություն ունեցող միութենական հանրապետություն։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել ու շահագործման են հանձնվել ավելի քան 640 խոշոր արդյունաբերական, այդ թվում՝ 146 մեքենաշինական ու մետաղամշակման, 142 սննդարդյունաբերության ձեռնարկություն, 17 էլեկտրակայան։ Եթե 1913 թ. Հայաստանի արդյունաբերությունն ուներ միայն 2 ճյուղ՝ գունավոր մետալուրգիա և սննդի արդյունաբերություն, ապա այժմ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը բաղկացած է մի քանի տասնյակ ճյուղերից։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1975 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 267 անգամ։ Նույն ժամանակամիջոցում ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 131 անգամ։ Գյուղատնտեսության արտադրանքը 1975 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 4 անգամ։

Աշխատանքի տերիտորիալ բաժանման ընդհանուր համակարգում Հայկական ՍՍՀ-ն իր ուրույն տեղն ունի երկրում։ Հայաստանի արդյունաբերության միութենական մասնագիտացման ճյուղերն են՝ գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը և մեքենաշինության, սննդի ու թեթև արդյունաբերության մի քանի ճյուղեր։ Ներկայումս Հայկական ՍՍՀ թողարկում է ՍՍՀՄ-ում արտադրվող ավտոդողերի 3,5, սինթետիկ քլորոպրենի կաուչուկի՝ 100, ուժային տրանսֆորմատորների՝ 3,5, մետաղահատ հաստոցների՝ 6,1, դարբնոցամամլակային հաստոցների՝ 5,6, սպիտակեղեն տրիկոտաժի՝ 4,9, կաշվե-կոշկեղենի՝ 1,6, կենցաղային սառնարանների՝ 2,4, ժամացույցների՝ 5, պահածոների՝ 2,3 տոկոսը։

Սովետական իշխանության տարիներին հանրապետության ներսում ևս փոխվել է արտադրաուժերի տեղաբաշխման պատկերը։ Եթե մինչհեղափոխական ժամանակաշրջանում Հայաստանի տերիտորիայի գերակշռող մասում չկային արդյունաբերական օբյեկտներ, ապա այժմ գրեթե բոլոր վարչական շրջաններում գործում են արդյունաբերական ձեռնարկություններ։

Արտադրաուժերի և աշխատանքի հասարակական բաժանման զարգացման հետ ամրանում են տնտեսական կապերը արտադրության տարբեր շրջանների միջև, որի շնորհիվ հզորանում ու կատարելագործվում է Հայկական ՍՍՀ տերիտորիալ-արտադրական համալիրը։

Հաշվի առնելով գոյություն ունեցող և հեռանկարում ձևավորվող տնտեսական կապերը, ՀՍՍՀ պետպլանին առընթեր տնտեսագիտության և պլանա-

Հայկական ՍՍՀ բնակչության տեղաշարժի հիմնական ուղղություններն են լեռնային շրջաններից դեպի Արարատյան դաշտի շրջանները և բոլոր շրջաններից դեպի Երևան, Լենինական ու Կիրովական քաղաքները, իսկ վերջին տասնամյակում՝ նաև դեպի Աբովյան, Հրազդան ու Չարենցավան քաղաքները։

Վերջին 16 տարիների ընթացքում չափազանց բարձր տեմպերով է աճել Արարատյան տնտեսական շրջանի բնակչությունը, որի շնորհիվ նրա տեսակարար կշիռը 1959 թ. 47,6 տոկոսից 1975-ին բարձրացել է մինչև 53,4 տոկոսի, այն դեպքում, երբ նրա տերիտորիան կազմում է հանրապետության տարածքի մոտ 20 տոկոսը։ Մնացած շրջաններում չնայած բնակչությունը բացարձակորեն աճել է, սակայն հարաբերականորեն այն նվազել է։ Անիի, Ղուկասյանի, Մեղրու վարչական շրջանների բնակչությունը ևս բացարձակորեն նվազել է։ Բնակչության արտահոսքն ուժեղ է եղել նաև Ստեփանավանի, Սիսիանի, Թումանյանի և Շամշադինի շրջաններից։

Հայաստանի տնտեսական շրջաններն իրարից տարբերվում են նաև ուրբանիզացման մակարդակով։ Այսպես, բնակչության ընդհանուր թվում քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կազմում է՝ Արարատյան տնտեսական շրջանում՝ 74,6 տոկոս, Շիրակի՝ 62,5, Լոռու՝ 58,5, Հյուսիս-արևելյան՝ 41,7, Սևանի՝ 39, Սյունիքի՝ 47,2 տոկոս, իսկ ամբողջ հանրապետությունում՝ 63,8 տոկոս։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում մեծ հնարավորություններ են ընձեռվում քաղաքների զարգացումը պլանաչափորեն կարգավորելու, բնակավայրերը ռացիոնալ տեղաբաշխելու համար։

Տարաբնակեցման ժամանակակից տիպերն ու ձևերն են՝ ագլոմերացիա, մեծ, խոշոր, միջակ և փոքր քաղաքներ, գյուղական բնակավայրեր։ Օրինակ, Մոսկվայի ագլոմերացիան 400 կմ շառավիղով նրա շրջապատում տեղադրված բոլոր քաղաքներն ու գյուղերն են, հանգստի գոտիները, ճանապարհներն ու այլ կոմունիկացիաներ։

Ագլոմերացիայի կենտրոն հանդիսացող մեծ կամ խոշոր քաղաքն իր բարձրագույն ուսումնական հաստատություններով, գիտական կազմակերպություններով, կուլտուրայի խոշոր օջախներով սպասարկում է ագլոմերացիայի ողջ բնակչությանը։ Ընդհանրապես այժմ տարածված է տարաբնակեցման խմբային համակարգը։ Միջակ ու փոքր քաղաքները ևս իրենց ուսումնական հաստատություններով, առողջապահական և կուլտուր-լուսավորական հիմնարկություններով պետք է սպասարկեն նաև շրջապատի գյուղական բնակչությանը։ Նույնիսկ խոշոր գյուղերն իրենց համանման հաստատություններով պետք է սպասարկեն շրջապատի փոքր գյուղերին։

Հայկական ՍՍՀ-ում ևս կազմավորվում են բնակեցման ագլոմերացիաներ։ Արդեն ձևավորվել է Երևանի ագլոմերացիան՝ 40—60 կմ շառավիղ ունեցող շրջապատի տարածքով։ Ագլոմերացիայի մեծ գոտին ընդգրկում է Սևանի շրջկենտրոնից մինչև Երասխ գետը և Հոկտեմբերյան քաղաքի միջև ընկած տարածքը։ Այդ տարածության վրա տեղադրված են 21 քաղաք ու քաղաքատիպ ավաններ և ավելի քան 200 գյուղական բնակավայրեր։ Ագլոմերացիայի քաղաքներն ու քաղաքատիպ ավանները տեղադրված են իրարից 8—9 կմ հեռավորության վրա։ Երևանի միջքաղաքային գոտին սկսվում է Աբովյան քաղաքից և շարունակվում մինչև Հոկտեմբերյան քաղաքը։ Վերադաս մարմինների որոշմամբ խիստ սահմանափակված է արդյունաբերական ձեռնարկությունների կառուցումը Երևանում։ Մեր կարծիքով, պետք է խիստ սահմանափակել արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցումը նաև Երևանի ամբողջ մերձքաղաքային գոտում։ Բացառություն կարող են կազմել բնակչությանը սպասարկող և գյուղատնտեսական հումք վերամշակող ձեռնարկությունները։ Դրանով իսկ կսահմանափակենք Երևանի և նրա մերձքաղաքային գոտու բնակչության մեխանիկական աճը։

Ընթացիկ տարվա սկզբին Երևանի բնակչության թիվը կազմել է 956,5 հազար մարդ, մեկուկես տարուց հետո այդ թիվը կհասնի 1 միլիոնի, որը կկազմի հանրապետության բնակչության մեկ երրորդը։ Որպեսզի սահմանափակենք բնակչության հետագա կենտրոնացումը մայրաքաղաքում, պետք է արագացնել հանրապետության փոքր քաղաքների զարգացումը։ Դրա համար անհրաժեշտ է նոր կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների և մասնաճյուղերի մեծ մասը տեղադրել փոքր քաղաքներում, մինչդեռ իրականում հակառակն է— արդյունաբերական շինարարության մոտ 70 տոկոսը կատարվում է Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում։



Արտադրաուժերի և բնակավայրերի ճիշտ տեղաբաշխումը պահանջում է բարելավել շրջանների հատակագծման գործը և կատարելագործել տարածքի տարաբնակեցման գլխավոր սխեման։ Շրջանների հատակագծումը պետք է նախորդի տնտեսական կոմպլեքսների, քաղաքների, ճանապարհների, օդանավակայանների նախագծմանն ու կառուցմանը։

ՍՍՀՄ պետշինը ավարտել է տարաբնակեցման գլխավոր սխեմայի կազմման աշխատանքները։ Այդ սխեման այժմ ճշտվում է միութենական հանրապետություններում։ Տարաբնակեցման գլխավոր սխեմայում մշակված են բնակավայրերի ցանցի կոմպլեքսային զարգացման ծրագիրը և բնակավայրերի խմբային համակարգի կազմավորման սկզբունքները։

Գլխավոր սխեմայում մշակված են մեծ քաղաքների հետագա ընդլայնումը սահմանափակելու, ինչպես նաև մանր գյուղական բնակավայրերը խոշորացնելու հարցերը։

Խուտորային համակարգի բացակայության պատճառով Հայաստանում փոքր գյուղերի թիվը մեծ չէ։ 1970 թվականին մեր հանրապետության 931 գյուղերից միայն 305-ում էր, որ 500-ից պակաս բնակչություն կար։ Անհրաժեշտ է լուրջ աշխատանքներ տանել գյուղական բնակավայրերի խոշորացման նպատակով։ Մի շարք գյուղերում երեխաների թիվն այնքան փոքր է, որ նույնիսկ չեն ապահովում 7-ամյա հանրակրթական դպրոցների կոմպլեկտավորումը։

Տասներորդ հնգամյակում է՛լ ավելի կամրապնդվեն մեր երկրի միութենական հանրապետությունների տնտեսական կապերը, կմեծանա աշխատանքի տերիտորիալ բաժանման արդյունավետությունը։ «Կուսակցության լենինյան ազգային քաղաքականությանը համապատասխան,— ասված է ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում,— կապահովվի բոլոր միութենական ու ինքնավար հանրապետությունների, տնտեսական շրջանների, ինքնավար մարզերի և ազգային օկրուգների էկոնոմիկայի նշանակալի վերելքը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 223—224)։

Սովետական ժողովուրդը, համախմբված մեկ միասնական հզոր ընտանիքում, իր բոլոր ջանքերն ի սպաս է դնում նյութական արտադրության, գիտության ու կուլտուրայի բնագավառներում նոր նվաճումների հասնելու նպատակին։

# ՀՈՅԱԿԱՊ ՄՏԱՀՂԱՑՄԱՆ ՎԱՌ ԴՐՎԱԳՆԵՐ*

Շնորհակալ, հո՜ւյժ շնորհակալ և լավ գործ է կատարել Մամուլի նորույթի գործակալության հրատարակչությունը՝ հնարավորություն ընձեռելով մեզ կարդալու Ա. Վ. Լունաչարսկու հոդվածների, ճառերի, զեկուցումների ու հուշերի՝ Նոր աշխարհի մարդը խորագրով գողտրիկ ժողովածուն, ուր խնամքով ամփոփված են հեղինակի՝ Լենինի տիտանական կենսագործունեությանը նվիրված խոհերը, մտորումները, համակողմանի գնահատումներն ու բնութագրությունները:

Իրավացի է հեղինակը, երբ շեշտում է, թե «Լենինապատում»-ի ստեղծումը նշանակում է ներկայացնել տարիների լենինյան փառավոր պայքարի, կառուցման, հեղափոխության և կուլտուրայի էպոպեան, ցուցադրել, թե Լենինն ինչպես է աճել այդ դարաշրջանից և ապա արգասավորել այդ իսկ դարաշրջանը: Ի դեպ, այս առումով եթե գնահատենք գիրքը, խորին համոզմամբ պետք է ասենք, որ համաշխարհային Լենինապատումն էապես հարստացավ հեղինակի դստեր կազմած հիշյալ երկով: Այն գունեղ և հմայիչ երկով, որի հեղինակը՝ Ա. Վ. Լունաչարսկին, վճռել էր գրել սիրելի առաջնորդի մահից անմիջապես հետո: Ավա՜ղ, վաղաժամ մահը անկատար թողեց Լունաչարսկու գրելիքը՝ «Կենսագրություն-պոեմը»: Ահա այդ մասին է նա գրել կնոջը. «Ըստ էության իմ թեման այս է. Լենինը որպես հանճարի ու հերոսի տիպ: Գիրքն այն մասին կլինի, թե ինչ է հանճարն ու հերոսը, արտաքուստ մարդկության օրինակն ու նմուշը: Իսկ Լենինը որպես նոր, լիակատար և, այսպես ասած, իր սոցիալհոգեբանական թափանցիկ կառուցվածքով հանճարի տիպ է» (նշվ. աշխ., էջ 183):

А В Луначарский

ЧЕЛОВЕК НОВОГО МИРА

Այս անգամ պատմությունը չժպտաց հանճարեղ ուսուցչի մեծաքանքար աշակերտին՝ Ա. Վ. Լունաչարսկուն, լենինյան ժողկոմին, որ հիվանդանոցից (Ֆրանսիա) գրել է կնոջը. «Ես ցանկանում եմ դեռևս ապրել թեկուզ նրա համար, որպեսզի Լենինի մասին գիրքը գրեմ: Դա իմ պարտքն է: Այդ գիրքը ամենանշանակալին կլինի այն բոլորից, ինչ ես կատարել եմ կյանքում... Ինձ հարկավոր է երեք տարի, ևս երեք տարի: Այդ երեք տարում ես շատ բան կանեմ: Կգրեմ գիրք Լենինի մասին, առաջվա պես ուժերս ցաք ու ցրիվ չեմ անի» (նշվ. աշխ., էջ 179):

Դիպուկ ու ճշմարտացի է ասված, որ Լունաչարսկուն այրում էր չկատարած պարտքի ըգգացումը: Հիրավի, իր փայլուն գրչով, գրելու հմայիչ ոճով օժտված ականավոր մարքսիստը կարող էր ի կատար ածել իր մտահղացումը, եթե ապրեր ևս մի քանի տարի: Չէ՛ որ նա գրել է, թե այդ խիստ կարևոր ու հրատապ խնդիրը լուծելու համար ինքն ամեն ինչ ունի, բացի ժամանակից: Ցավոք, պատմությունը զլացավ նրան այդ ժամանակը, նա չհասցրեց գրել Վ. Ի. Լենինի «ճշմարիտ-գիտական կենսագրությունը»: Նա համոզված էր, որ միայն մարքսիստական մեթոդոլոգիայի օգնությամբ է հնարավոր գրել այն «մարդու մասին, որի պատմական վեհությունը ներդաշնակված էր անօրինակ անձնական հմայքի հետ... որը գաղափարապես մաքուր էր, անչափ շնորհալի ու մարդկայինի սահմանները գերազանցող, թեև իրականում առաջին անգամ էր դրանք լրացնում» (նշվ. աշխ., էջ 178):

Չպետք է անտեսել այն բնորոշ հանգամանքը, որ անփոխարինելի առաջնորդի մասին հիմնավոր աշխատություն գրել անձկողը քաջ գիտեր, թե որքան գերող, նույնքան և բարդ է այդ թեման. գիտեր, որ դա նշանակում է գրել Ռուսաստանի մեծ հեղափոխության ամենահուրհիրացող այն տարիների իրադարձությունների մասին, երբ ընդամենը քառորդ դարի ընթացքում համաշխարհային սոցիալիստական հեղափոխության պատմությունն էր երկնում: Ա. Վ. Լունաչարսկին սիրելի առաջնորդի ու ընկերոջ կերպարը վերամարմնավորելիս ձըգտել է առավել բարոյական առումով կենդանագրել պատկերն այն մարդու, որին հավասարը պատմության մեջ հայտնի չէ իրեն: Նա չէր տարակուսում, որ իր գրելիքը լինելու է համաշխարհային գրականության գեղեցկագույն ու հմայիչ գրքերից մեկը:

Նոր աշխարհի մարդը երկում արծարծված առեղծվածների բազմակերպությամբ, պատմական իրադարձությունների ու գունագեղ բնութագրությունների անմիջական ջերմությամբ թաթավուն հեղինակի ինքնատիպ այդ աշխատությունը մեզ հմայում է և նրանով, որ իր գրական դյութող տաղանդի շնորհիվ ընթերցողներին մտովի փոխադրում է սոցիալիստական մեծ հեղափոխության այն մրրկալի ժամանակները, երբ դասակարգերի շնդալից մարտերում հին աշխարհն էր ճարճատում երբևէ չեղած նորի երկունքի ցավերում:

Պատմական շրջադարձային այդ անօրինակ հեղաբեկումը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որի վաթսունամյակը մեծագույն շուքով կնշվի ընթացիկ տարում, նախապատրաստված էր Ռուսաստանի լենինյանների կազմակերպական ահռելի ջանքերով, մեծաթիվ զոհերով, գաղափարային անզիջում մարտերով, քաղաքացիական կռիվներում ցուցաբերած զանգվածային սխրանքներով: Այս ամենի մասին իր հյութեղ գրչով պատմում է այդ հրայրքոտ օրերի անմիջական մասնակից Ա. Վ. Լունաչարսկին, առանձնապես շեշտելով, որ նոր հասարակարգի կրողն ու կոփողը դյուցազնակերպ լենինյաններն էին, որոնց սխրալի գործունեության շատ էջեր կան հիշատակված գրքում:

Նոր աշխարհի կատարյալ մարդու՝ Լենինի, բյուրեղյա հանճարի ակներև վկայություններն են անցյալ դարավերջին սկսած նրա՝ Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում. կեղծ մարքսիստ Պ. Ստրուվեի օպորտունիստական հայացքների համոզիչ քննադատությունը, Ի՞նչ անել, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ, Սովետական իշխանության հերթական խնդիրները, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ և շատ այլ դարակազմիկ երկեր:

Իր երևելի հետազոտություններով Լենինը ո՛չ միայն մահացու հարված հասցրեց լիբերալ նարոդնիկության ռեակցիոն էությանն ու պրակտիկ շարժմանը, ո՛չ միայն հետևողականորեն մերկացրեց ու զգետնեց ռուսական ռեֆորմիզմի-մենշևիզմի նախահորը՝ Պ. Ստրուվեին, ո՛չ միայն տնտեսագիտական խորագույն վերլուծմամբ ապացուցեց կապիտալիզմի զարգացման անխուսափելիությունը Ռուսաստանում, այլև գիտականորեն հիմնավորեց ծրագրային այն թեզը, որ կազմավորվող բանվոր դասակարգն է կոչված վարելու հեղափոխության նավը Ռուսաստանում, որի հաղթության ռեալ զորավիգը աշխատավոր գյուղացիության հետ կնքվելիք դաշինքն է:

Ուստի, իրեն ու ողջ աշխատավորությանը կեղեքումից և դարավոր ստրկությունից ազատագրող բանվոր դասակարգին առավել անհրաժեշտ է միասնական ու հզոր քաղաքական կուսակցություն, որը հաստատապես ըմբռնի ու առաջնորդվի մարքսիզմի սկզբունքներով: Այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ է ունենալ բանվորական հեղափոխական մամուլի օրգաններ, որոնք հեղափոխության գաղափարները սերմանեն աշխատավորական զանգվածների շրջանում, ամեն կերպ խթանեն դասակարգային կռվի կազմակերպման ընթացքին: Հայտնի է, որ պատմական այդ դերը կատարեց արտասահմանում Լենինի հիմնադրած «Իսկրա» լրագիրը: Եվ ահա շատ չանցած, գրել է Լունաչարսկին, այդ լրագրի կայծերից Ռուսաստանում այնպիսի կրակ

* А. В. Луначарский. Человек нового мира. М., 1976.

բորբոքվեց, որը տեսանելի էր աշխարհի չորս ծագերում: Մի բոց, որի նմանը երբեք չի փայլատակել աշխարհում: Այդ իսկ ժամանակ Վլադիմիր Իլյիչը դարձավ բանվոր դասակարգի ու սոցիալ-դեմոկրատական կուսակցության մեջ միավորված մտավորականության գլխավոր առաջնորդներից մեկը: Շուտով հեղափոխական շարժման մեջ ձևավորված երկու հոսանքների պայքարը խորացավ և ռուսական առաջին հեղափոխության թեժ գոտեմարտերում մի անգամ ևս ապացուցեց մենշևիզմի ռեֆորմիստական-օպորտունիստական ոգին և Լենինին վիճակվեց լինել ամենահեղափոխական հոսանքի՝ բոլշևիզմի ամենահեղինակավոր առաջնորդը, կարդում ենք Ա. Վ. Լունաչարսկու իմաստալի գրքում:

Լենինի գլխավորած բոլշևիկյան կուսակցության շնորհիվ Հոկտեմբերյան հեղափոխությունն այնպիսի ծավալով ընթացավ, որ այն անհամեմատ հզոր էր ու արմատական, քան 1789 թվականի ֆրանսիականը, հաստատում է հեղինակը: Հիմն ի վեր սասանելով կապիտալիստական համակարգը, երկրի զարգացման ընթացքը վարելով կոմունիզմի հունով, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը միաժամանակ իմպերիալիզմի դեմ հանեց կեղեքվող գաղութային աշխարհը և, այդպիսով, վերջնականապես փլուզման հասցրեց կապիտալիստական գաղութային սիստեմը: Այդ բոլոր պատմական իրադարձություններն են բնորոշում Վլադիմիր Իլյիչի մեծագույն դերը համաշխարհային պատմության մեջ, ամփոփում է տաղանդավոր հրապարակախոս Ա. Վ. Լունաչարսկին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով մարդկությունն անհրաժեշտության թագավորությունից ոստնեց կոմունիզմի էրան: Մարդկային պրոգրեսի այս վիթխարի թռիչքը կատարվել է Լենինի հանճարեղ ստրատեգիայի շնորհիվ, եզրակացնում է գրքի հեղինակը: Սակայն, մինչ այդ բախտորոշ հաղթանակը, Լենինը հրապարակավ ծառս ելավ II Ինտերնացիոնալի պարագլուխների դեմ, ովքեր մինչև 1914 թ. իմպերիալիստական պատերազմի սկսվելը կանգնեցին «հայրենի» իմպերիալիստների շովինիզմի դիրքերում: Մինչև ուղն ու ծուծը լինելով հետևողական մարքսիստ ինտերնացիոնալիստ՝ Լենինը ցիմերվալդյան ու Կինտալի կոնֆերանսների ամբիոններից լիովին մերկացրեց սոցիալ-շովինիստների, փտած կաուցկիականների դասակարգային դավաճանական կուրսը: Նա անողոք կռիվ մղեց թե՛ ցարիզմի, թե՛ ռուսական բուրժուական կառավարության դեմ, որը ցարական իշխանության տապալումից հետո էլ շարունակում էր իմպերիալիստական պատերազմը:

Լենինն առաջինն էր, որ միջազգային մասշտաբով համառ պայքար ծավալեց իմպերիալիստական պատերազմը հրահրողների դեմ, պրոպագանդելով այդ պատերազմը վերածել դասակարգային-քաղաքացիական կռվի: Վարելով մարքսիստական ինտերնացիոնալիստական տակտիկա՝ Լենինը հանդես եկավ միջազգային պրոլետարիատին ու աշխատավորությանը իմպերիալիզմի պարբերաբար նյութած սպանդներից փրկելու արմատական և իրոք հումանիստական ծրագրով: Իր բոլոր հետևորդներին նա դաստիարակում էր հեղափոխական մարքսիզմի անաղարտության ոգով, հիշեցնելով Ֆրիդրիխ Էնգելսի այն միտքը, թե այլ ժողովրդին ստրկացնելը մեծ դժբախտություն է ստրկացնողի համար:

Այո՛, Լենինը գրել է իսկապես, թե հեղափոխության մոտալուտ հաղթության հարցում Մարքսն ու Էնգելսը հաճախ են սխալվել: Բայց հեղափոխական մտքի հսկաների նման սխալները, ովքեր բարձրացել և ողջ աշխարհի պրոլետարիատին վեր էին բարձրացրել մանր, առօրյա, կոպեկային խնդիրներից՝ հազար անգամ ավելի ազնիվ էին, հոյակապ ու պատմականորեն արժեքավոր, ճշմարտացի, քան թե կազյոնի լիբերալիզմի գռեհիկ իմաստությունը, որը երգում է, աղաղակում, կոչում է ու բարբաջում հեղափոխական ունայնությունների մասին, հեղափոխական կռվի ապարդյունության մասին, հակահեղափոխական «սահմանադրական» զառանցանքների սքանչելիության մասին (տե՛ս ПСС. т. 15, стр. 249):

Անսահման ուսանելի է ու բնորոշ այն ջրաբաժան եզրակացությունը, որպիսին արել է Լենինը մեծ Հոկտեմբերից դեռ 10 տարի առաջ: Նա գրել է. «Ռուսական բանվոր դասակարգն իր ազատությունը նվաճելով, սխալներով լի իր հեղափոխական գործողություններով Եվրոպային առաջ կմղի, ու թող իրենց հեղափոխական անգործությամբ գռեհիկները պարծենան անսխալականությամբ» (նույն տեղը):

Ա. Վ. Լունաչարսկին երիցս իրավացի էր՝ գրելով, թե իմպերիալիզմի ու նրա սոցիալ-պնակալեզների դեմ ծավալած իր տիտանական պայքարով Լենինը դարձավ Աշխատանքի տերության բոլորից ճանաչված ու սիրված առաջնորդը: Բոլոր նրանք, ովքեր ատում էին պատերազմը և բանվորության շարքերում էին նշմարում իրենց փրկության նախակարապետին, միլիոնավոր աշխատավորներ ձեռք մեկնեցին մեծ Լենինին:

Հիրավի, նա նոր տիպի առաջնորդ էր, որի խոսքն ու գործը համերաշխ էին: Զարմանահրաշ այդ մարդու խառնվածքի գերակշիռ հատկանիշը նրա կերպարի կեսը հանդիսացող կամքն էր, որոշակի, ծայրահեղ չափով գերլարված կամքը, որը կարողանում էր կենտրոնանալ մերձակա խնդրի վրա՝ դուրս չգալով շրջագծից, որն ամեն կարգի մասնակի խնդիրը դասում էր համաշխարհային քաղաքական ահագին շղթայի օղակում, կարդում ենք Լունաչարսկու գրքում:

Լենինի լուսավոր այդ բարեկամն ու զինակիցը երիտասարդության ուշադրությունը սևեռում էր այն իրողության վրա, որ առանց մեծ ոգևորության մեծ գործեր չեն կատարվում: Իսկ այդ ոգևորությունը Լենինին շատ էր հատուկ. խոր սիրո, այրող ատելանքի, կենաց ճշմարտությանը կրքոտությամբ ձգտող մարդ էր նա: Մի մարդ, որը ձգտում էր մարդկությանը մոտեցնել իր հստակ կանխատեսած ապագային: Նա ամենից խոր և բոլորից հեռու էր նշմարում գալիքի ու ներկայի հորձանուտները, հեղափոխության օվկիանոսի տեղատվությունները ու մակընթացությունները:

Այդ առումով Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության գործում խոշոր դեր խաղաց նրա Ի՞նչ անել ուղենիշ աշխատությունը: Տվյալ դեպքում տեղին չէ՞ վերհիշել Կուգելմանին գրած Կ. Մարքսի այն դրույթը, որի համաձայն պատմությունը միֆական բնույթ կունենար, եթե «պատահականությունները» նրանում ոչ մի դեր չխաղային: «Բայց արագացումն ու դանդաղեցումը մեծապես այդ «պատահականություններից» են կախված, որոնց մեջ նմանապես երևան է գալիս և այնպիսի «դեպք»-ը, որպիսին սկզբից շարժման գլուխ կանգնած մարդկանց խառնվածքն է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 33, стр. 175):

Ահա թե որպիսի էական նշանակություն է ունեցել Լենինի խառնվածքը Ռուսաստանի հեղափոխական շարժման համար:

Տարբեր ժամանակներում, զանազան առումներով Ա. Վ. Լունաչարսկին անդրադարձել է Լենինի խառնվածքին: Մեկնելով տարիներով ապրածից ու առաջնորդի հետ ունեցած իր աշխատակցային անմիջական հարաբերություններից՝ նա մեզ թողել է իրեն հատուկ հոգևոր վառ պաթոսով համակված որքան ճշմարտացի, նույնքան հմայիչ բնութագրություններ, որոնք միլիոնավոր աշխատավորներին առավել մտերմիկ ու հավերժ սիրելի են դարձնում անմահ առաջնորդի դյուցազնական կերպարը: Եթե խոսենք Լենինի սրտի մասին, գրել է նա, ապա այն առավել դրսևորվում է սիրո իր արմատականությամբ: Դա ոչ թե սեր-բարոյականություն էր, ինչպես կենվորն է պատկերացնում այն: Իհարկե, ո՛չ: «Երբ նա հազվադեպ խոսում էր ճշմարտության, մարդկային վաղնջական բարոյականության, բարու մասին, ապա զգացվում էր, թե որքան անսասան էր նրա այդ զգացմունքը, որը ջերմացնում էր նրան, զորավիգ լինում կամքը գործադրելիս, նրան դարձնելով հզոր ու պողպատյա: Եթե նա ատում էր, իսկ նա ատում էր քաղաքական թշնամիներին, բայց նա անձնական թշնամիներ չուներ, նա ատում էր դասակարգերին և ոչ անձնավորություններին: Եթե ատում էր, ապա ատում էր հանուն սիրո, հանուն այն սիրո, որն առավել համապարփակ էր այսօրվա եղածից, այսօրվա հարաբերություններից»:

Այնուհետև Լունաչարսկին հանգում է այն եզրակացության, որ իր ասածից չպետք է կարծել, թե նոր աշխարհի այդ իմաստուն մարդը չոր ու ցամաք էր, մոլեռանդ: Ընդհակառակը, նա մարդ էր բառիս բուն իմաստով: Նրա պես հոգատար, առավել քնքուշ, ավելի անձնվեր մարդ հնարավոր չէ պատկերացնել (տե՛ս А. В. Луначарский. Человек нового мира стр. 30—31):

Ի դեպ, Մ. Ս. Շահինյանը, հանգամանորեն անդրադառնալով Լենինի ու Մ. Գորկու վաղեմի վեճին, շեշտում է, որ Լենինի ջերմագին սերը վայելող Ալեքսեյ Մաքսիմովիչը գրել է. «...Լենինի ողջ կյանքի հիմնական նպատակը համամարդկային բարօրությունն է, և նա անխուսափելիորեն պետք է հեռավոր դարերում տեսնի վերջն այն մեծ պրոցեսի, որի սկզբին ասկետաբար ու խիզախորեն ծառայում է նրա ողջ կամքը...» (Четыре урока у Ленина. М., 1972, стр. 281):

Այստեղ ուշագրավը միայն այն չէ, որ Լենինի անհուն սիրունակությունը ևս միշտ ծառայել է նրա հիմնական նպատակին: Այլև այն, ինչ նշել է Մ. Շահինյանը. «Լենինը կարողացել է ատել պայքարում, ինչպես դա մարդուն է հատուկ: Եվ Լենինը սիրել է կարողացել, ինչպես դա մարդկային սրտին է հատուկ: Իսկ եթե չլիներ այդ, եթե նա ասկետ լիներ՝ մարդկությունը չէր կարող այնպես ջերմագին սիրել նրան, հարազատին ու մերձավորին, յուրայինին ու հարկավորին, ինչպես նա այժմ Լենինին է սիրում» (նույն տեղը, էջ 284):

Թվում է, թե Շահինյանի նուրբ շտկումը միանգամայն տեղին է ու էական՝ Լենինի բնավորության համակողմանի ընկալման առումով:

Ով բախտ է ունեցել խոսելու և գործելու Լենինի հետ, գրել է Լունաչարսկին, ամենից առաջ նա կնկատի նրա վիթխարի խելքը: Աշխարհի այդ մեծագույն մտածողը զերծ էր դիլետանտության որևէ նշույլից, նրա միտքը շեշտ-

ված դիալեկտիկական էր, ճկուն և գրեթե մըշտապես լարված: Սա չէր խանգարում, որ նա միշտ լիներ կենսախինդ և առույգ, ամենքի համար հմայիչ ու գերող: Նա գիտեր, որ թըշնամին ի վերջո կպարտվի: Սակայն յուրաքանչյուր սխալը, երբ այն վերաբերում էր մարդկանց կյանքին, համարում էր վտանգավոր: Իր այնքան հարուստ կենսափորձից իմաստնացած, նա գիտեր, որ պատմությունը բոլոր խոռոչների պահը...

Մաքրելով հարյուրամյակների մեր ճորտության ամոթանքը, գրել է Լունաչարսկին, Լենինը Ռուսաստանը դարձրեց աշխարհի ամենաառաջավոր, կոմունիստական հասարակություն կերտող երկիրը: Լենինի պես մարդը հավերժական է: Նա պատմության մեզ տրված պարգևն էր, այն հանճարեղ նավավարը, որը ճիշտ հունով էր առաջնորդում հեղափոխության նավը: Լենինն այն բոցավառ ջահն էր, որի լույսի ներքո մենք զանազանում էինք փոքրն ու մեծը: Հանդիսանալով մեծագույն անձնավորություն, ասում է Լունաչարսկին, Լենինը զերծ էր անձնայնությունից (личничества): Եվ դա նրա խառնվածքի կարևոր հատկություններից էր: Դա շատ խոր երևույթ է և արժանի ուշադիր հետազոտման: Այո, նա բոլորովին զերծ էր ինքնագոհությունից, գոռոզամտությունից, ինքնասիրահարվածությունից: Նրա անսահման համեստությունն անվիճելի է: Կյանքում նա երբեք բնակարան կեցվածք չի ունեցել: Այդ խիստ գործունյա մարդն իր անձի նկատմամբ շատ անփույթ էր:

Մի ճառում Նադեժդա Կրուպսկայան ասել է, թե Վլադիմիր Իլյիչը չէր սիրում խոսել իր սիրո մասին, բայց նրա սիրտը լի էր բոլոր կեղեքվողների հանդեպ տածած սիրով: Նա չէր հանդուրժում, երբ ընկերները կամ նույնիսկ մերձավորները հետաքրքրվում էին նրա անձնական ապրումներով: Չէր սիրում խոսել առանձին մարդկանց մասին, անձնատուր լինել ինչ-որ հուշերի:

Հայտնի է, որ Լենինն իր գրածը նախքան տպագրության հանձնելը, երբեմն ուղարկում էր իր զինակիցներին կարդալու և կարծիքներ տալու: Ահա նա իր դասական երկը՝ «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, անվանում է բրոշյուր, որի ձեռագիրը հղում է Գ. Վ. Չիչերինին, հետևյալ երկտողով. «Ես պետք է խնդրեմ Ձեզ... թղթատել իմ բրոշյուրը կամ Անգլիային վերաբերող դրա գլուխը և խորհուրդ տալ ինձ. այնտեղ սխալներ ու անտակտություններ չկա՞ն: Գործնական շտկումները, եթե Ձեզ դժվար չէ, շատ պիտի խնդրեմ, որ գրառեք առանձին մատիտով» (ПСС, т. 51, стр. 186, 189):

Չիչերինը կատարել է Լենինի խնդրանքը, որի առթիվ Լենինը գրել է. «ընկ. Չիչերին: Շատ շնորհակալ եմ ձեռագրիս առթիվ արված նկատառումների համար» («Ленинский сборник», XXXVII, стр. 199):

Հիրավի, Լենինի բացարձակ համեստությունը սքանչելի օրինակ կարող է լինել այսօրվա մարդու համար: Լունաչարսկին նշել է, որ միջազգային կոնգրեսներում Լենինն ինչ-որ պատսպարվում էր ստվերներում, թեև նա առհասարակ քաշվող էր: Գուցե ինքը լիահավատ չէր, որ վարժ գիտեր օտար լեզուները: Սակայն իրականում նա լավ խոսում էր գերմաներեն և բնավ ոչ վատ ֆրանսերեն ու անգլերեն: Կուսակցության մի անկետայի այն հարցին, թե ազատ խոսո՞ւմ եք որևէ այլ լեզվով. Լենինն իր ձեռքով գրել է. «Եվ ոչ մի լեզվով»: Կուսակցության ականավոր գործիչ Ելենա Ստասովան գրել է, որ Կոմինտերնի II կոնգրեսում Լենինը զեկուցեց գերմաներեն ու ֆրանսերեն: Նա լավ տիրապետել է նաև անգլերենին ու իտալերենին:

Լունաչարսկին հիշատակել է, որ մամուլում միասին աշխատելիս հաճախ նկատում էինք, որ նա այս կամ այն մասնակի թեզը փոփոխում էր, երբ նրան մատնանշում էին իր սխալները: Մենք նկատում էինք, որ նա կոլեկտիվում սիրով էր աշխատում... Նա արտասովոր ու հավասարատենչ մարդ էր... Դա այն մարդն էր, որի համար գոյություն չուներ «ես»-ը: Երբեմն ինքն էր ասում. ա՜յ թե հիմարություն արի... ես պահպանել եմ այն թուղթը, որի լուսանցքներում կարմիր մատիտով գրված ու ընդգծված է՝ մշակել այսինչ ծրագիրը, եթե մինչև հիմա չի մշակված՝ կախել Լունաչարսկուն և՝ Վ. Ի. Լենին, ստորագրությունը: Ծրագիրը մշակված չէր, ես արժանի էի կախվելու: Բայց գիտեինք, որ դա կատակ է, բայց և անշուշտ, կարևոր ցուցում է, թե այստեղ սխալվել ես: Պատահում էր, որ նա սխալ կարգադրություն էր անում, չիմանալով ողջ իրադրությունը: Մենք ասում ենք՝ Վլադիմիր Իլյիչ, Դուք սխալվել եք: Նա անհապաղ պատասխանում էր՝ դեհ, որ այդպես է, հարկավոր է շտկել սխալը:

Այնուհետև Լունաչարսկու մոտ կարդում ենք հետևյալը. «Երբ նա ապաքինվեց ծանր վիրավորվելուց հետո, մի անգամ իր մոտ կանչեց որոշ ընկերների, որոնց ասաց, թե ինքը դըժգոհ է, որ իր անձի մեծարում է սկսվել: Դա ցավալի է ու վնասակար: Ամենքս էլ գիտենք, որ հարցի էությունն անձը չէ: Նա հորդորել է ներկաներին աննկատելիորեն դիմակայել այդ վարքագծին, քանի որ նա չէր հանդուրժում անձի պաշտամունքը: Թեև, շարունակում է Լունաչարսկին, նա իր կյանքի վերջին տարիներին հասկացավ ու ներեց մեզ: Այստեղ արդեն բան չես կարող անել, որովհետև բոլորս էլ ո՛չ միայն հարգում, այլև սիրահարված էինք մեր անզուգական առաջնորդին: Մենք հմայված էինք նրա ծով խելքով և բարոյական վսեմ կերպարով: Նա, որպես հանճարեղ գիտնական ու հեղափոխության առաջնորդ, բոլորից խոր վարեց ու արգասալի սերմեր ցանեց մարդկային մտքի ու հասարակական կյանքի անդաստանում:

Մարդկության նոր էրայի այդ անզուգական գիտնականի համար գիտությունը կոչված էր ծառայելու ժողովրդի բարօրության ու երջանկության հաստատությանը: Նրա փիլիսոփայական հիմնարար երկերը միտում էին ո՛չ միայն մարքսիզմի անզիջում պաշտպանությունը բուրժուական գաղափարաբանության զինակիրներից, այլև հեղափոխության առջև ծառացած բազմաթիվ պրոբլեմների առավել մշակումն ու զարգացումը՝ հանուն կոմունիզմի վերջնական հաղթության: Լենինը և ոչ մի վայրկյան չէր տարակուսում, որ ո՛չ միայն հնարավոր, այլև անխուսափելի է աշխարհի հեղափոխական վերափոխումը: Պատմական այդ վիթխարի թռիչքը կատարվեց նրա ու իր կուսակցության հմուտ ղեկավարությամբ: Լենինը գրել է. «Մենք իրավունք ունենք հպարտանալու և մեզ երջանիկ համարելու, որ մեզ վիճակվեց աշխարհի մի անկյունում առաջինը խորտակել այն վայրի գազանին, կապիտալիզմը, որն արյամբ հեղեղեց աշխարհը, մարդկությանը մատնեց սովի ու վայրենացման և որն անպայման ու շուտով կխորտակվի, որքան էլ հրեշային ու գազանային լինեն նրա հոգեվարքի մոլեգնության դրսևորումները» (ПСС, т. 36, стр. 478):

Լենինի մարգարեական այս եզրակացությունը սոցիալիստական համաշխարհային սիստեմի վերաբերյալ վաղուց է իրականացել: Լունաչարսկին իր գրքում բազմիցս է անդրադարձել կանխատեսության լենինյան զարմանալի ունակության հարցին: Որպես հրապարակախոս,— գրել է նա,— Լենինն ուժեղ էր իր ոճի հստակությամբ ու ամենաբարդ հարցերի մատչելի, բայց խոր բացատրությամբ: Նա երբեք չէր քծնում ունկնդիրներին և չէր կամենում շարադրանքը համեմել որևէ գեղեցկությամբ: Նրա խոսքը միշտ էլ բովանդակալի էր, ներքին համոզմամբ տոգորված, ներգործման մագնիսող ուժով համակված: Ունկնդիրները նրան լսում էին գերլարվածությամբ:

Ա. Վ. Լունաչարսկու մեծարժեք երկում հանգամանորեն արծարծված են ժողովրդական լուսավորության, կուլտուրայի, արվեստի, երիտասարդության կոմունիստական դաստիարակության՝ ժամանակի հուզող հարցերը: Նա վարպետորեն դրվատել է Լենինի ղեկավար դերը կուլտուրական հեղափոխության բոլոր մարզերում: Սոցիալիզմի կառուցումը պահանջում է աշխատավորական զանգվածների կուլտուրական կատարյալ հասունացում: Իսկ դա հնարավոր է միայն սոցիալիստական հեղափոխության հաղթությամբ ստեղծված սովետական կարգերում: Կոմունիզմը հարկավոր է սովորել կյանքից, աշխատանքում ու նորի համար մըղվող պայքարում: Այսպես էր ուսուցում մեզ մեր սիրելի ու անզուգական առաջնորդը՝ Վ. Ի. Լենինը, ասել է Լունաչարսկին:

Ո՛չ միայն քննադատորեն յուրացնել դարերի ընթացքում ստեղծված ողջ դրականը, այլև այդ հիման վրա կերտել նոր, հումանիստական կուլտուրա:

Լունաչարսկին հիշատակում է, թե ինչպես մի անգամ ծանոթանալով արվեստի որոշ նմուշների, Լենինն ասել է. Որպիսի՜ հրապուրիչ բնագավառ է արվեստի պատմությունը: Որքան շատ աշխատանք կա այստեղ կոմունիզմի համար: Երեկ մինչև լույս չկարողացա քնել, անվերջ թերթատում էի մի գիրքը մյուսի հետևից: Ես խոր ցավ զգացի, որ ժամանակ չեմ ունեցել և չունեմ արվեստով զբաղվելու (ն. տ., էջ 123):

Լունաչարսկին իրավամբ նշում է, որ կուսակցական շինարարության հարցերը ևս, ըստ Լենինի, լուսավորական բնույթ ունեին: Լենինի պես առաջնորդը չէր կարող լուսավորական չլինել: Իրականում նա համաշխարհային մասշտաբով ժողովրդական զանգվածների ուսուցիչն էր: Նա ճշմարիտ էր, երբ երկրի լուսավորության կարևորագույն գործը Լենինի գործունեության մի մասն էր համարում: Ո՛չ մեքենան, ո՛չ սուրը չեն կարող ապահովել նոր հասարակարգի կառուցումը, եթե աշխատավորության կուլտուրայի մակարդակը ցածր է: Մեծ Լենինն իր կարճատև, բայց հարուստ և իմաստալի կյանքում անդուլ մեզ ուսուցում էր այդ երանելի մակարդակին հասնելու եղանակները:

Ահա թե ինչու,— գրում է Լունաչարսկին,— Լենինն ամենամեծ մարդն էր նոր հասարակարգ կերտողների մեջ: Իշխանության գրավումից հետո,— սովորեցրել է նա,— մեր առջև ծառանում է կոմունիստական հասարակության ստեղծման վիթխարի ու դժվարին խնդիրը, որի լուծումն անհնար է առանց մարդկանց քաղաքական լուսավորության: Իսկ սա պահանջում է կուլտուրայի անհամեմատ բարձր մակարդակ և ո՛չ միայն անգրագիտության վերացում: Դա թելադրում է լավ տիրապետել նորագույն ու անվերջ զարգացող տեխնիկային ու գիտության վերջին հասումներին:

Իսկ այդ նշանակում է ջանալ այնպես, որ գիտությունը մարդկանց համար միս ու արյուն դառնա, ծառայի երկրի արտադրաուժերի զարգացման կենսական գործին:

Մեր կուսակցության ծրագիրը, գրել է Լենինը, խարսխված է գիտական, ընդ որում մատերիալիստական աշխարհայացքի վրա: Այս առումով հետաքրքրական է պրոլետկուլտի միջադեպը:

Հայտնի է, որ Լենինը խիստ ու տեղին քննադատել է բոգդանովյան պրոլետկուլտի ծրագիրն ու գործելակերպը, շեշտելով հետևյալը. «Ոչ թե պրոլետկուլտուրայի նոր մտահնարանք, այլ եղած կուլտուրայի լավագույն օրինակների, ավանդույթների, արդյունքների զարգացում մարքսիստական աշխարհզգացման տեսակետից, թե՛ կյանքի պայմանների, թե՛ պրոլետարիատի՝ իր դիկտատուրայի դարաշրջանում մղվող պայքարի տեսակետից» (ПСС, т. 41, стр. 462):

Եվ ահա պրոլետկուլտականներին հակադրվող Լենինի մշակած ծրագրում ասված է այսպես. «Մարքսիզմը, որպես հեղափոխական պրոլետարիատի գաղափարաբանություն, իր համաշխարհային-պատմական նշանակությունը նվաճել է նրանով, որ մարքսիզմը բնավ մի կողմ չի նետել բուրժուական դարաշրջանի արժեքավոր հաստումները, այլ ընդհակառակը, յուրացրել ու վերամշակել է այն բոլորը, ինչ արժեքավոր է մարդկային մտքի ու կուլտուրայի առավել քան երկուհազարամյա զարգացման մեջ» (ն. տ., էջ՝ 337):

Այս ոգով Լենինը պրոլետկուլտի համագումարի նախօրեին խոսել է Լունաչարսկու հետ, և նա համաձայնել է այդ սկզբունքը պաշտպանել համագումարում: Սակայն մեծ է լինում Լենինի զարմանքը, երբ լրագրում կարդում է, որ Լունաչարսկին «ուղղակի հակառակն է խոսել այն բանի, ինչի վերաբերյալ երեկ պայմանավորվեցինք», գրել է Լենինը (էջ 336):

Եվ այս անտակտության համար Լենինը խիստ կշտամբել է Ա. Վ. Լունաչարսկուն: Թեև պրոլետկուլտի համագումարը Լենինի ծրագիրն ընդունել է միաձայն:

Անհրաժեշտ է շեշտել, որ Լունաչարսկու գիրքը մեզ հրապուրում է ու առինքնում ո՛չ միայն իր հարուստ բովանդակությամբ, կենդանի և լուսառատ ոճով, այլ գերող անկեղծությամբ ու անմիջականությամբ: Ինչպես հատուկ է գաղափարական կոմունիստին, նա աշխատության տարբեր էջերում ընթերցողին հանգամանալի ծանոթացնում է իր սխալներին, սայթաքումներին, շարադրելով Լենինի արդարացի և ուսանելի գնահատականների էությունը:

Գրքի հեղինակը քանիցս մորմոքով դատապարտում է սեփական անփութությունը, որ ժամանակին, օր-օրի չի գրառել Վ. Ի. Լենինի մտքերը: Նրա յուրաքանչյուր էջից ձեր ականջին է հասնում Ա. Վ. Լունաչարսկու տրտմագին հուզմունքը և նրա մեծագույն ափսոսանքը, որ ժամանակի չգոյության և ապա ծանր հիվանդության պատճառով չի կարողացել գրել «Կենսագրություն-պոեմ»-ը, որը լինելու էր իր գլուխգործոցը:

Բայց այն ամենը, ինչ զետեղված է լույս տեսած նրա գրքում, բավականին շատ և հույժ արժեքավոր բան է տալիս հեղինակի խորագույն մտահղացման վերաբերյալ, մտահղացում, որի հոյակապ ուրվագծերը կարդացվում են խոր բավականությամբ:

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

---

Քաղաքաշինության հարցեր

# ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆԸ՝ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՈՒՄ

Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ
Հայկական ՍՍՀ վաստակավոր ճարտարապետ

Մեր ժամանակներում շինարարության բնագավառի կարևորագույն, հրատապ պրոբլեմներից է քաղաքաշինությունը, որի հաջող լուծման հետ է կապված մարդկության բարեկեցիկ կյանքը թե՛ այժմ և թե ապագայում:

ԲՆԱԿԵՑՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ. 1920 թ. սկսած Հայաստանն արագ տեմպերով ընթանում է ուրբանիզացման ուղիով: Եթե 1920 թ. բնակչության միայն 9 տոկոսն էր ապրում քաղաքներում (որի զգալի մասն էլ զբաղվում էր գյուղատնտեսությամբ), այժմ՝ 63-ը. այդ շարունակվող պրոցեսն արդյունք է, մի կողմից՝ արդյունաբերության հարաճուն զարգացման, մյուս կողմից՝ գյուղատնտեսության մեքենայացման: Զգալի են բնակչության մշտական հոսքը գյուղից քաղաք, ընդհանրապես բնակչության մեխանիկական մեծ աճը քաղաքներում ու շրջկենտրոններում:

Փոքր քաղաքների համար (մինչև 50 հազար բնակչությամբ) այդ դրական երևույթ է, որովհետև դրա շնորհիվ քաղաքն ստանում է տնտեսական առավել ամուր ու կայուն հիմք և, որ կարևոր է, այդպիսով հնարավոր է դառնում բարձրացնել բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը:

Մտահոգիչ չէ նշված երևույթը նաև միջին քաղաքներում (50—100 հազար բնակչությամբ): Ավելի ճիշտ ու լավ կլինի, որ մեծ քաղաքների՝ Լենինականի ու Կիրովականի և, մանավանդ, Երևանի փոխարեն աճեն փոքր ու միջին քաղաքները, որովհետև մեծ քաղաքներում առաջանում են քաղաքաշինական և այլ բազում դժվարություններ՝ մատակարարման, տրանսպորտային, հիգիենիկ, սոցիալական և այլն:

Մեծ քաղաքներում անհնար է դառնում բնակչության սրընթաց աճի սահմանափակումը: Այսպես, օրինակ, Երևանի բնակչության թիվն արդեն մոտենում է մեկ միլիոնի և նույնիսկ տարեկան 2 տոկոս բնական աճի դեպքում այն կկազմի 20 հազար, իսկ տասը տարվա ընթացքում՝ 200 հազարից կանցնի, այսինքն՝ մի նոր Լենինական: Շատ որոշումներ են կայացվել մեծ քաղաքների աճի սահմանափակման, դրանցում նոր՝ քաղաքաստեղծ ձեռնարկություններ չհիմնելու, փոքր ու միջին բնակավայրերի զարգացմանը զարկ տալու մասին:

Եղել են այդպիսի հանձնարարականներ նաև Երևանի վերաբերյալ, սակայն իրականում տեղի է ունենում հակառակը, ընդլայնվում են Երևանի արտադրական, վարչական, ուսումնական, գիտական նախագծային և այլ ձեռնարկությունները, ստեղծվում նորերը:

Համալսարանը, պոլիտեխնիկական, գյուղատնտեսական և այլ ինստիտուտներ, նոր ուսումնական մակերեսների մեծ կարիք ունենալով, նորանոր շենքեր են կառուցում, խտացնելով իրենց առանց այն էլ խիտ կառուցապատված տարածքը, զրկվելով ազատ տարածություններից, ինչպիսիք անհրաժեշտ են սպորտ հրապարակների համար, կանաչապատման, բարեկարգման և այլ նպատակներով: Չէ՛ որ խոսք կար ինստիտուտների մի մասը այլ բնակավայրեր տեղափոխելու մասին: Մի՞թե ավելի ճիշտ չի լինի, իրոք, այդպես անել, իսկ եղած և կառուցվող շենքերով լիովին բավարարել մնացածները: Որքա՜ն ավելի դյուրին կլինի գյուղատնտեսներ և անասնաբույժ-անասնաբույծներ պատրաստել այգիների,

գաշտերի ու անասնապահական ֆերմաների մոտ և ոչ թե այդ ամենից զուրկ Երևանում:

Եվ նա, ով, իրոք, ցանկանում է դառնալ գյուղատնտես ու անասնաբույժ, կմեկնի այդ քաղաքը (լինի այն մեծ, միջին, թե փոքր), 4—5 տարի կուսանի այդտեղ, կսիրի, կկապվի դրան և ավարտելուց հետո չի ձգտի այգեգործությամբ, գինեգործությամբ, ծաղկաբուծությամբ, անասնաբուժությամբ զբաղվել անպայման Երևանում:

Ուսանողություն, երիտասարդություն, կյանքի ամենաթարմ շունչը այդ վայրերում, և ինքը՝ միջին ու փոքր քաղաքը կմեծանա, ավելի հետաքրքրական ու գրավիչ կդառնա այդտեղի առօրյան:

Գոհունակությամբ նշում ենք, որ վերջին երկու տասնամյակներում մեր հանրապետությունում զգալի միջոցառումներ են իրականացվել փոքր և միջին քաղաքների (Հրազդան, Սևան, Կամո, Մարտունի, Վարդենիս, Իջևան, Ստեփանավան, Եղեգնաձոր, Գորիս) զարգացումն արագացնելու նպատակով: Ստեղծվել են նաև նոր քաղաքներ (Աբովյան, Չարենցավան, Մեծամոր և այլն), որոնք հնարավորություն են ընձեռել արտադրական նոր ձեռնարկությունները չկուտակելու մեծ քաղաքներում: Համեմատաբար արագացել է շինարարությունն առողջարանային վայրերում (Դիլիջան, Արզնի, Հանքավան, Ջերմուկ, Սևանի ափերին): Նոր վերելքի պայմաններ են ստեղծվել Լենինականի համար. զարգացման իր տեմպերով գերազանց է Կիրովականը. միջին մեծության քաղաքն արդեն դասվել է մեծ քաղաքների շարքը: Մի քանի քաղաքներում ստեղծվել են մայրաքաղաքային ինստիտուտների ֆիլիալներ: Այս ասպարեզում անհրաժեշտ է ձեռնարկել ավելի համարձակ ու արդյունավետ միջոցների:

ԽՆԱՅԵՆՔ ՀՈՂԸ. Մեր հանրապետության երկրաբանական յուրահատուկ պայմանների պատճառով քաղաքաշինական ամենակարևոր պրոբլեմը բնակավայրերի տարածքի ընդարձակումն է: Առանձնապես ծանր վիճակում են այդ տեսակետից Երևանը, Կիրովականը և բոլոր այն քաղաքները, որոնք գտնվում են գետերի նեղ հովիտներում (դրանք քաղաքների մեծամասնությունն են կազմում):

Մենք հարուստ չենք հողատարածություններով (մանավանդ հողագործության համար պիտանի), իսկ քաղաքների կառուցման համար պահանջվում է համեմատաբար հարթ տեղանք, որը մեծ մասամբ հարմար է գյուղատնտեսությանը: Որոշ քանակությամբ այդպիսի հողեր անխուսափելիորեն պետք է հատկացվեն բնակավայրերի ընդարձակմանը. հարկ է հնարներ գտնել այդ քանակությունը կրճատելու:

Առաջին հերթին, պետք է խնայողաբար, խելացի օգտագործել հողերը. իրականում այդպես էլ արվում է, սակայն ամեն մի քառակուսի մետր բնակելի մակերես պահանջում է նորմատիվներով իրեն հասանելիք հողատարածությունը: Այսպես, օրինակ, Երևանում վերջին տարիներս, միջին հաշվով, կառուցվում է 500 հազար քմ բնակելի մակերես, որի 30 տոկոսը տեղադրվում է քաղաքի կառուցապատված մասերում, խտացման հաշվին, իսկ 70-ը՝ նոր հողամասերում, որի համար տարեկան արվում է ընդամենը 80—100 հեկտար. իսկ այդ շատ պակաս է սահմանվածից և կառույցների խտությունը սահմանափակում է նախագծողների ստեղծագործական հնարավորությունները. պակասում են կանաչապատման, խաղահրապարակների ու բարեկարգման այլ միջոցների տարածությունները. հետևա՞նքը. բնակիչների դժգոհությունները՝ ոչ պատշաճ բարեկարգման առիթով:

Հողերի տնտեսման մի այլ միջոց է շենքերի հարկայնության ավելացումը, որն արդեն լայնորեն գործադրվում է մեզ մոտ: Սակայն հարկաշատ շենքերն ավելի թանկ են, հարուցում են կենցաղային և ինժեներական սարքավորման մի շարք անհարմարություններ (ջրամատակարարման, վերելակների շահագործման, աղբի հեռացման և այլն): Բացի դրանից, չպետք է կարծել, թե հարկերի ավելացումը հողատարածության խնայման մեծ հնարավորություններ է ընձեռում. տարբերությունը (բնակելի մակերեսի ավելացման տեսակետից) 5 և 10 հարկանի շենքերի դեպքում ուղիղ համեմատական չէ հարկերի տարբերությանը (ինչպես ոմանք կարծում են), քանի որ այդ դեպքում շենքերն ավելի հեռու պետք է լինեն իրարից և, հետևաբար, կպակասի դրանց թիվը: Եվ ընդհանրապես մեկ հեկտարի վրա որոշ քանակությունից ավելի բնակիչ հնարավոր չէ բնակեցնել (800՝ նոր բնակելի թաղամասերում, 1.200՝ վերակառուցվող), որովհետև բացի բնակելի տներից, տվյալ տարածքում պիտի տեղադրվեն նաև հասարակական շենքեր, խաղահրապարակներ, կանաչապատվի տարածքը և այլն: Պետք է խոստովանել, որ հարկաշատ շենքերը հաճախ հրապուրում են նախագծողներին կառուցապատման միօրինակությունը խախտելու համար, և այդ անհրաժեշտ է, բայց, երբ դա համատարած դառնա, կստեղծվի մի նոր միօրինակություն. մանավանդ, երբ դրանք կառուցվում են բոլոր՝ թե՛ մեծ և թե՛ փոքր բնակավայրերում, որոնք դրա հետևանքով կորցնում են իրենց մեծությանը համապատասխանող մասշտաբայնությունը, ինքնատիպությունը, կերպարը:



Մեր լեռնային երկրի պայմաններում կա հողերի տնտեսման մի այլ միջոց. ունենք անհաշիվ խիստ քարքարոտ լանջեր, բլուրներ, ձորեր և գյուղատնտեսության համար ոչ պիտանի հողեր, որոնք մնում են անօգտագործելի: Նախկինում, տեխնիկական հնարավորությունների անբավարարության պատճառով, սահմանափակվում էր այդպիսի տեղանքի օգտագործումը, բնակավայրի համար պահանջվում էին համեմատաբար հարթ, աղբյուրներով ապահովված տեղ, գետափ: Այժմ հնարավորություն ունենք և՛ ոռոգման, և՛ կենցաղային կարիքների համար ջուր մատակարարել շատ հեռու տարածություններից, հաղթահարել ռելիեֆի բարդությունները և շենքեր կառուցել, բնակավայրեր հիմնել շինարարության համար նորմատիվներով ոչ պիտանի տեղանքներում: Դրա համար պետք է մշակել նման տեղանքին հարմարեցված հատուկ շենքերի տիպեր, քաղաքաշինական, ինժեներական սարքավորման և բարեկարգման յուրօրինակ ձևեր:

Այժմ զգալի չափով այդպիսի հողեր են տրամադրվում քաղաքացիներին բանջարանոցների, այգիների համար, թույլատրելով կառուցել այնտեղ ոչ մեծ տնակ՝ ժամանակավոր օգտագործման նպատակով: Իսկ ինչո՞ւ նման տեղանքը չհատկացնել բնակելի մենատների կառուցմանը: Անգամ գյուղական ավաններում, սովխոզներում հաճախ գյուղատնտեսության համար պիտանի հողերի վրա կառուցվում են բազմահարկ, բազմաբնակարանային տիպային տներ, որոնցում ապրող սովխոզի աշխատողը երբեմն զրկվում է տնամերձի և անհրաժեշտ տնտեսություն ունենալու հնարավորությունից: Բազմահարկ շենքերը ձեռնտու են այն պատճառով, որ դրանցով հեշտ և արագ է կատարվում շինարարության պլանը, բայց դրա հետևանքով ծախսվում են պիտանի հողերը, ստեղծվում են կենցաղային անհարմարություններ ու բարդություններ ջրամատակարարման, կոյուղու և բարեկարգման այլ միջոցների առնչությամբ:

Քաղաքատիպ բնակավայրերի համար բազմահարկ շենքեր կարելի է կառուցել նաև վերոհիշյալ «ոչ պիտանի» հողերի վրա: Նման փորձեր արդեն արվում են Իջևանում, Ղափանում, սակայն դրանք դեռևս անհրաժեշտ չափով տարածված չեն: Դժվարություններ, անշուշտ, կան առաջադրված այս պրոբլեմի լուծման խնդրում, սակայն դրանք հաղթահարելի են, իսկ նշված միջոցառումը տնտեսության համար պիտանի հողերի տնտեսման առումով կարող է մեծ արդյունք տալ:

Այդ նույն սկզբունքով են ղեկավարվել մեր պապերը, կառուցելով Զանգեզուրի բազմաթիվ բնակավայրեր՝ ժայռոտ լանջերի վրա, չունենալով ժամանակակից տեխնիկական հնարավորություններ. նման տեղանքում այժմ կարելի է ստեղծել բնակեցման ավելի կատարյալ, ավելի հարմար ձևեր:

Հողատարածությունների տնտեսման ժամանակակից մի այլ միջոց է ստորգետնյա տարածությունների օգտագործումը, որն ավելի ու ավելի է կիրառվում հողատարածքներով ոչ հարուստ երկրներում (հատկապես Ճապոնիայում) և մեծ քաղաքների վերակառուցման նախագծերում: Այսպես, օրինակ Պրագայում հասարակական նոր շենքերի (ռեստորան, կինոթատրոն և այլն) համար չունենալով ազատ հողատարածություններ և, կամենալով պահպանել գոյություն ունեցող շենքերը, դրանք կառուցվել են եղածների տակ: Այսպիսով, նրանք կարողացել են միաժամանակ երկու խնդիր լուծել, ունենալ նոր, ստորգետնյա հասարակական շենքեր, պահպանելով հին, պատմական արժեք ներկայացնողները: Կան բազմատիպ շենքեր, որտեղ բնական լուսավորությունն անհրաժեշտություն չէ, և դրանք հաջողությամբ կարող են լինել ստորգետնյա, արհեստական լուսավորությամբ և օդափոխությամբ:

ԲՆԱԿԱՎԱՅՐԵՐԻ ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ. Քաղաքաշինական հրատապ խնդիրներից է էկոլոգիական հավասարակշռության պրոբլեմը— մթնոլորտի, ջրի ու հողի մաքրության, կանաչի պահպանման և այլ հարցեր: Այդ պրոբլեմի լուծումը չպետք է կապել միայն վնասակար արտադրությունը քաղաքներից տեղափոխելու հետ. ուր էլ որ գտնվեն այդ ձեռնարկությունները, ցանկալի լինել չեն կարող. այդ շատ վտանգավոր է նաև վնասակար արտադրության մեջ աշխատողների համար: Ուստի, հիմնական խնդիրը պետք է լինի վնասազերծել արտադրապրոցեսը՝ կատարելագործելով տեխնոլոգիան, դարձնելով այն հերմետիկ, մինչև վերջին գրամը օգտագործելով հումքը:

Ժամանակակից գիտությունն ունի այդ հնարավորությունները և մեզ մոտ շարունակ կիրառվում են գործնական միջոցներ այդ ասպարեզում, սակայն տեմպերը գոհացուցիչ չեն: Հանրապետության գիտական հաստատությունների պատվի գործն է արագացնել մեր գեղեցիկ բնության պահպանմանը նպաստող ուսումնասիրությունները:

Վերջին տասնամյակում նոր հիմնվող արտադրություններում պակասում է քիմիական ձեռնարկությունների թիվը: Մեր երկիրը հարուստ է հանքերով, և քիմիական արդյունաբերությունն անխուսափելի է, սակայն տերիտորիալ սահմանափակ հնարավորությունների պայմաններում մտահոգիչ է այդպիսի ձեռնարկությունների խըտությունը: Թերևս որոշ դեպքերում օգտակար

կլինի հրաժարվել հանածոները տեղում մշակելուց: Լավ է նաև այն, որ վերջերս ավելի մեծ ուշադրություն է նվիրվում առողջարանների կառուցմանը, որի համար թե՛ լեռնային և թե՛ նախալեռնային վայրերում ունենք բնակլիմայական նպաստավոր պայմաններ: Առողջարանների կառուցումը կարևոր տեղ կգրավի մեր հանրապետության ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման մեջ, որը միաժամանակ կնպաստի բնության պահպանությանը:

Բնական միջավայրի պահպանման ու բարելավման արդյունավետ միջոցներից է մեր հանրապետությունում նոր տարածությունների անտառապատումը:

Անտառտնտեսության կազմակերպությունները ամեն տարի վիթխարի աշխատանք են կատարում մեր լերկ լեռները կանաչապատելու, հողը էրոզիայից փրկելու, կլիման բարելավելու նպատակով: Սակայն, ցավով պետք է նշենք, որ որոշ վայրերում նորատունկ անտառները թողնվում են անխնամ, անջուր, և տունկերը, չհասցնելով արմատներ գցել, կանաչել, չորանում են:

Նույնպիսի կարևոր միջոց է նոր ջրամբարների կառուցումը, որոնց թիվը հետզհետե աճում է՝ բազմացնելով ջրովի հողատարածությունները, նպաստելով միկրոկլիմայի մեղմացմանը, ընձեռելով նաև նոր հնարավորություններ ջրային սպորտի կազմակերպման և հանգստավայրերի ստեղծման համար:

ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ. Ժամանակակից քաղաքաշինության ամենակարևոր պրոբլեմներից է քաղաքային երթևեկության կարգավորումը: Այժմ, երբ ավտոմեքենաների թիվը սրընթաց աճում է, լուրջ անհանգստություն է հարուցում տրանսպորտի կարգավորումը թե՛ մայրաքաղաքում, թե՛ այլուր:

Սոսկ անվտանգ երթևեկությանը նվիրված միամսյակներով և ագիտացիայով հնարավոր չէ լուծել այս պրոբլեմը, անհրաժեշտ են քաղաքաշինական լուրջ միջոցառումներ— մայրուղիների ցանցի կարևոր խաչմերուկների կարգավորում (ստորգետնյա անցումներ՝ հետիոտնի և տրանսպորտի համար): Ե՛վ վարորդները, և՛ հետիոտները պետք է խստիվ պահպանեն երթևեկության կանոնները:

Մեզ մոտ դեռևս ցածր է ճանապարհաշինական աշխատանքների մակարդակը: Այսպես, օրինակ, տեղանքի և սխեմայի պարզության շնորհիվ հաջող է ստացվել Էջմիածնի խճուղու չհատվող երթևեկության հանգույցը, մինչդեռ Ավանի ձորինը, բարդ ռելիեֆի պայմաններում, այնքան էլ հաջող չէ, հողի լիցքերով աղարտվել է տեղանքի բնական դիրքը, իսկ հանգույցը ինչպես հարկն է չի կարգավորում երթևեկությունը:

Դանդաղ են վերակառուցվում Երևանի տրանսպորտային կարևոր մայրուղիները, հիմնվում նորերը:

Ի տարբերություն քաղաքների փողոցների ցանցի անբավարար վիճակի, լուրջ հաջողություններ են ձեռք բերվել մայրուղիների կառուցման ասպարեզում (Երևան—Սևան, Էջմիածին—Հոկտեմբերյան և այլն): Այդ շատ անհրաժեշտ էր, որովհետև միջքաղաքային երթևեկությունն օրեցօր ավելի մեծ կարևորություն է ստանում: Քաղաքներն այժմ մեկուսացած օրգանիզմներ չեն, կազմում են միասնական խմբավորումներ (ռեգիոններ)՝ կապված արտադրական, աշխատանքային, մատակարարման, կուլտուրական ու կենցաղային սպասարկման և այլ կապերով, ունենալով ռեգիոնալ կենտրոններ (Երևան, Լենինական, Կիրովական, Իջևան, Սևան, Եղեգնաձոր, Ղափան, Սիսիան, Գորիս): Երկաթուղային ցանցի և ասֆալտած ճանապարհների ընդարձակումը կարևոր նշանակություն ունի հանրապետության ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքի, արտադրաուժերի հետագա զարգացման համար: Այդ են վկայում Երևան—Սևան—Շորժա—Ջող, Աղստաֆա—Իջևան երկաթգծերը, որոնց շուրջը գտնվող բնակավայրերն սկսել են արագ զարգանալ:

Երկաթուղային կապ պետք է հաստատվի և լավ ճանապարհներ պետք է հիմնվեն բոլոր քաղաքների ու շրջկենտրոնների միջև, այդ մեծապես կնպաստի դրանց թե՛ տնտեսական, թե՛ կուլտուրական վերելքին:

Օրվա մտահոգիչ հարցերից է ավտոկանգառների և գարաժների տեղադրումը քաղաքներում: Մեր կարծիքով, նպատակահարմար կլինի կառուցել պետական մեծ, ընդհանուր, վարձով տրվող գարաժներ (հատկապես ստորգետնյա), օգտագործելով մեր բարդ ռելիեֆի հնարավորությունները: Օրինակ, Սայաթ-Նովայի և Զարենցի փողոցների միացման համար ահագին հողալիցք կատարվեց, մինչ դրա փոխարեն կարելի էր հարյուրավոր մեքենաների գարաժներ կառուցել հենց փողոցի տակ, բարձրացնելով այն սյուների վրա: Նույնը կարելի էր անել Ավանի ձորի տրանսպորտային հանգույցի համար կատարված հողալիցքի փոխարեն: Նման փորձ կատարվել է Մոսկվայում, Մոսկվա գետի վրա կառուցվող կամրջամատույցներում:

ՔԱՂԱՔԱՇԻՆԱԿԱՆ ՆԱԽԱԳԾՈՒՄՆԵՐԸ. Մասսայական շինարարության այժմյան տեմպերի և տիպային շենքերի կառուցման պայմաններում կարևորագույն նշանակություն են ստանում քաղաքաշինական նախագծումները:

ՀԿԿ XXVI համագումարում, անդրադառնալով հանրապետության ճարտարապետության արդի վիճակին, ընկեր Դեմիրճյանը նշեց, որ որոշակի հաջողություններ են ձեռք բերվել ժամանակակից մոնումենտալ կառույցների գործում, «որոնք թե՛ համապատասխանում են իրենց ֆունկցիոնալ նշանակությանը և թե՛ ունեն զգալի արժեք՝ որպես մարդկանց էսթետիկական, գաղափարական դաստիարակության միջոց»: Ապա նա վեր հանեց այդ բնագավառի թերությունները, որոնցից կարևորն այն է, որ բնակավայրերի մի մասը չունի զարգացման և կառուցապատման գիտականորեն հիմնավորված գլխավոր հատակագծեր, որի պատճառով և հնարավոր չէ կոմպլեքսայնորեն կառուցապատել այդ բնակավայրերը: Որոշ քաղաքների ու գյուղերի կառուցապատման գործում,— ասաց նա,— զգացվում է միապաղաղություն, շաբլոնի կնիքը, մանավանդ այն դեպքերում, երբ նախագծելիս հաշվի չեն առնվում տեղանքի բնական յուրահատկությունները, ազգային ճարտարապետության առաջավոր միտումները:

Իրոք, ոչ թե առանձին շենքերը, այլ շենքերի համալիրներն են որոշում քաղաքների ճարտարապետական կերպարը: Չնայած դրան, քաղաքաշինական նախագծերը մեզ մոտ չեն համապատասխանում կյանքի ռեալ պահանջներին: Դրա պատճառը նախ և առաջ այդ կարևոր գործի վատ կազմակերպումն է: Մինչև այժմ մեր հանրապետությունը չունի հատակագծային նախագծման հատուկ կազմակերպություն, որտեղ կարելի լինի կենտրոնացնել պահանջվող որակյալ կադրերը, անհրաժեշտ նախագծումները բարձր որակով կատարելու համար: Մինչդեռ ամեն մի մինիստրության, վարչության, ձեռնարկության կից ամենուր ստեղծվում են ծավալային նախագծման ինստիտուտներ, բյուրոներ, սեկտորներ, իսկ քաղաքաշինական նախագծումներով զբաղվող կազմակերպությունները մնում են նույնը:

Դրա պատճառներից մեկն էլ այն է, որ առանձին շենքը, բնակելի տունը, դպրոցը, ռեստորանը կոնկրետ սպառող, պահանջող ունի, իսկ քաղաքաշինական նախագիծն արվում է ամբողջ բնակավայրի, թաղամասի, համալիրի համար, որը չունի անմիջական սպառող, բայց որը շատ կարևոր է, քանի որ քաղաքաշինական սխալներն ավելի դժվարուղղելի են և ավելի թանկ: Երբեմն էլ մտածում են, թե քաղաքաշինական նախագիծը կարող է հետո կազմվել, կամ առհասարակ չկազմվել, քանի որ առանց դրան էլ բնակելի և այլ շենքեր հաջողվում է համաձայնեցնել և կառուցել: Եվ այդպես «խտացման կարգով», հաճախ շենքը շենքին կցելով, մասամբ ստեղծվում են թաղամասեր, համալիրներ, մանավանդ քաղաքների արդեն կառուցապատված մասերում: Անհրաժեշտ է նույնիսկ խոստովանել, որ այժմ նախագծման գործի ներկա մակարդակում անգամ շարունակվում է, այսպես ասած, «առանձին-առանձին» նախագծման պրակտիկան. նույն թաղամասում, համալիրում շենքեր են նախագծվում տարբեր նախագծային կազմակերպություններում, ընդհանուր հատակագծի բացակայությամբ՝ հաճախ չհամաձայնեցված:

Քաղաքաշինական նախագծումները չեն համապատասխանում ժամանակի պահանջներին, դրանց մակարդակը համեմատաբար ցածր է նաև այն պատճառով, որ գերադասվում է նախագծել առանձին շենք, որն արագ է կառուցվում և բարձրացնում նախագծողի հեղինակությունը, իսկ քաղաքաշինական նախագիծը ձգձգվում, մասնատվում և մնում է առանց որոշակի հեղինակի:

Քաղաքաշինական նախագծերի ցածր մակարդակի վկայությունն է այն փաստը, որ այժմ չունենք մի նոր, միութենական ճանաչում գտած բնակելի համալիր: Չի կառուցվել, ասենք, Լենինի հրապարակի նման մի նոր հրապարակ, եթե չհաշվենք Կիրովի անվանը՝ Կիրովականում, որի հաջողության գրավականը հենց այն է, որ կառուցվել է քաղաքաշինական մի ընդհանուր նախագծով, հեղինակային մի խմբի կողմից: Բայց Լենինականի Լենինի և Ասատրի հրապարակները կառուցվել են առանձին նախագծերով, առանց ընդհանուր մտահղացման, այդ պատճառով իսկ զուրկ են ճարտարապետական միասնությունից: Նման նախագծման հետևանք է և այն, որ Երևանի կենտրոնում, 4—5 հարկանի շենքերի մեջ, տեղ-տեղ բարձրանում են հարկաշատ շենքեր, իսկ 2—3 հարկանի «կինոյի տունը» կառուցվել է 100 մետր լայնությամբ գլխավոր պողոտայի և 200 մետր լայնությամբ կանաչ գոտու հատման անկյունում, որտեղ ճիշտ կլիներ հարկաշատ շենք կառուցել:

Մի՞թե հանդուրժելի է, որ Երևանի կենտրոնի վերակառուցման նախագիծը մինչև օրս պատրաստ չէ, որի պատճառով իսկ նոր շենքերը տեղադրվում են մասնակի նախագծերով: Այդ նախագծի համար հայտարարվեց համամիութենական մրցույթ. երկրի լավագույն նախագծային կազմակերպություններից՝ Մոսկվայից, Լենինգրադից, Կիևից ստացվեցին մի շարք հետաքրքրական նախագծեր, երկու լավ նախագիծ կազմվեց Երևանում (Երևաննախագիծ և Հայպետնախագիծ): Վերջնական նախագիծը հանձնարարվեց Երևաննախագիծ ինստիտուտին (որին շնորհվեց առաջին մրցանակը). սակայն արդեն բոլորում է երկրորդ տարին, իսկ նախագիծը դեռ ավարտված չէ:

Մեր թե՛ հին և թե՛ նոր բնակելի թաղամասերի ու զանգվածների թերությունը հիմնականում դրանց անավարտությունն է: Շատ դանդաղ են կատարվում հասարակական շենքերի կառուցումը, կանաչապատումն ու բարեկարգումը, ուստի և երբեմն դրանց տեղը ևս գրավում են նոր

## ՄԱՐԴԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ. ԽԱԽՏՎԱԾ ՀԱՎԱՍԱՐԱԿՇՌՈՒԹՅՈՒՆ

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, եղանակի փոփոխությունները մեկնաբանող առեղծվածների թիվը շարունակում է աճել: Օվկիանոսները տաքանում են, և ավելանում է գոլորշիացումը: Ձյունը կուտակվում է, աճում և տեղաշարժվում են սառցաբուրգերը, մոլորակը սառչում է: Հրաբուխներն առաջացնում են սառնություն կամ սառնությունը հանգեցնում է հրաբխաժայթքումների: Ներքին պրոցեսները շարժում են մայրցամաքները և բարձրացնում լեռները, որոնք պահպանում կամ փոփոխում են օդի ու ջրի շրջանառությունը: Պարզվում է, որ արևը կարող է «պարպել», առաջացնելով Երկիր թափանցող էներգիայի տատանումներ:

Բայց ինչպիսին էլ լինեն այս հանելուկների պատասխանները, մասնագետները մի խնդրում համամիտ են. այժմ ավելի ու ավելի կարևոր դեր է խաղում բոլորովին նոր մի գործոն — մարդը: Երկրի երկարատև գոյության ընթացքում մարդու գործունեությունն առաջին անգամ, բնական ուժերին հավասար չափով, սկսում է ազդել եղանակի և կլիմայի վրա:

Ականավոր կլիմայագետ Ռեյդ Բրայսոնը (Վիսկոնսինի համալսարանից) մարդու գործունեության բոլոր արգասիքները — գյուղատնտեսական մեքենաներից առաջացած ծուխը, փոշին, ռեակտիվ ինքնաթիռների դյուզից արտաժայթքող գազաշիթերը, քաղաքների թանձր մառախուղն անվանում է «մարդկային հրաբուխ»:

Այժմ մեծ ջանքեր են գործադրվում որոշելու համար կլիմայի վրա մարդու գործունեության ազդեցության աստիճանը: Մասնագետները փորձում են չափել ջերմությունը գեներացնող մեծ քաղաքների, էլեկտրակայանների ու արդյունաբերական ձեռնարկությունների ազդեցությունը մթնոլորտի, եղանակի, գյուղատնտեսության և շրջակա միջավայրի վրա:

Հակառակ իր կամքի՞ է մարդը փոխում կլիման, թե ոչ, համենայնդեպս, նա ջանում է այդ անել կանխամտածված: Տեղումների արհեստական առաջացմամբ մարդն անմիջականորեն միջամտում է բնական պրոցեսներին: Նույնը կարելի է ասել փոթորիկների ավերիչ ուժը նվազեցնելու, օդանավակայանների վրա ամպերը ցրելու, ոռոգման բարելավման նպատակով գարնանային ջրերի հորդացման համար լեռներում ձյուն առաջացնելու փորձերի մասին:

Չնայած այս բոլոր ջանքերը դեռ վարանոտ են, և դրանց արդյունավետությունը դեռևս ապացուցված չէ, Երկրի մի շրջանը մի այլ շրջանի հաշվին բարվոքելու նպատակով եղանակը երկար ժամանակով փոխելու պոտենցիալ հնարավորության թելադրանքով մարդը պետք է և՛ տնտեսական, և՛ քաղաքական առումով գիտակցի իր պատասխանատվությունը: Ողջ աշխարհի համար ի՞նչ հետևանք կունենա գյուղատնտեսական նպատակներով նոր տարածությունների մաքրումը, օրինակ՝ բրազիլիական ջունգլիների անտառահատումը: Կամ ինչի՞ կհանգեցնի ռեակտիվ ինքնաթիռների առավել ծանրաբեռնված երթուղիներում ամպերի խիստ թանձրացումը՝ 1950 թվականից սկսած:

Երբ Բերինգյան նեղուցը ցանկապատենք ամբարտակով, իրենց ուղղությունը կփոխե՞ն արդյոք ողջ Խաղաղ օվկիանոսի հոսանքները, դրանով իսկ շտկումներ կատարելով Հյուսիսային Ամերիկայի քարտեզում:

Այս ամենով հանդերձ, փաստը մնում է փաստ, որ մինչև օրս էլ մարդը չգիտե, թե ի՛նչն է իրականում հսկում ու փոփոխում կլիման, եղանակն իր մոլորակում, ի՛նչն է անմիջական ազդեցություն գործում այն պայմանների նեղ դիապազոնի վրա, որոնցում միայն կարող է գոյատևել կյանքը, ինչպես և հենց ինքը՝ մարդը: Այս հարցերը դեռևս սպասում են իրենց լուծմանը:

ՍԷՄՅՈՒԵԼ ՄԵՏՅՈՒԶ

«За рубежом», № 1, 1977.



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 03071 Պատվեր 1344 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.100 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 13/VI-1977 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ալ. Խաչակյան փող. № 28:*



# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Սովետական արհմիությունները մեր հասարակության ազդեցիկ ուժն են: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հայկական ՍՍՀ տեղական սովետների ընտրությունների կանոնադրություն: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Կ. ԱԿՇԻՆՍԿԻ— Կլիմենտ Եփրեմովիչ Վորոշիլով: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Արմենակ Բուդաղյան: *«Հայաստան» հրատ., 1977:*

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության մասին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Հին և միջնադարյան հայ քրեական իրավունք: *ԵՊՀ հրատ., 1977:*

Վ. ՂԱՐԻԲՅԱՆ— Անձնուրաց ծառայություն հայրենիքին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ռ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Մեքենաների և սարքավորումների ռացիոնալ շահագործման տնտեսական սահմանները: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Դ. ԴԵՄԻՐՃՅԱՆ— Երկեր՝ երկու գրքով: *Գիրք առաջին, երկրորդ: «ՀԳԳ» մատենաշար, Ե., «Սովետական գրող», 1977:*

**М. СУСЛОВ. — На путях строительства коммунизма.** Речи и статьи. В двух томах. М., Политиздат, 1977.

**М. ЗИМЯНИН. — Ленинизм — революционное знамя эпохи.** М., Политиздат, 1977.

**Фридрих ЭНГЕЛЬС.** Биография. Изд. 2. М., Политиздат, 1977.

**Рассказы о партии.** Том 2. Изд. 2, доп. М., Политиздат, 1977.

**СССР и Польша.** Интернациональные связи — история и современность. Том I. М., Политиздат, 1977.

**В. ОСТРОВСКИЙ. — Новый этап в развитии колхозного строя.** М., Политиздат, 1977.

**К. СМИРНОВ. — Знания, убеждения, жизнь.** Диалог с молодым современником. М., Политиздат, 1977.

**М. ШАТИРЯН. — Генерал, рожденный революцией.** Повесть об Александре Мясникове (Мясникяне). М., Политиздат, 1977.

**Н. ПОПОВ. — Техническое обеспечение управления производством.** Методологические и организационные проблемы совершенствования. М., «Экономика», 1977.

**Б. СМИРНОВ. — Функции управления социалистическим производством.** М., «Экономика», 1977.

**Экономическое стимулирование в материально-техническом снабжении.** М., «Экономика», 1977.

**Комплексный план развития сферы обслуживания населения.** М., «Экономика», 1977.

**Б. ТИХОМИРОВ. — Автоматизированная разработка отраслевого плана капитальных вложений.** М., «Экономика», 1977.

ԳԻՆԸ՝ 20 Կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՆՎԵՐՋԱՆԱԼԻ ՖՈՏՈԺԱՊԱՎԵՆ

*Կիևի համալսարանի մոնոմերների և պոլիմերների քիմիայի ամբիոնի աշխատակիցներն ստեղծել են մի արտասովոր ֆոտոժապավեն, որը կարելի է օգտագործել գրեթե 10 հազար անգամ. նկարել, երևակել, լվանալ պատկերը և կրկին նկարել...*

*Ժապավենը ճկուն է, ծածկված մետաղի և պլաստմասսայի շերտով։ Նկարելիս լույսի ազդեցությամբ մետաղաշերտում առաջանում է էլեկտրական լիցք, որի մեծությունը համապատասխանում է տվյալ տեղում թափանցած լույսի չափին։ Նկարելուց հետո ժապավենը թեթևակի տաքացնում են. լիցքավորված մասում առաջանում է պատկեր։ Ապա այն կարելի է տպել ֆոտոթղթի վրա կամ «լուսավորել» էկրանի վրա։*

## ՄԱՇԿԻ ՓՈԽԱՐԵՆ

*Բուդապեշտի Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրիի անվան ռադիոբիոլոգիայի և բժշկության պետական գիտահետազոտական ինստիտուտում խոզի կաշվից մշակել են պատրաստուկ, որը կարելի է օգտագործել ուժեղ այրվածքների դեպքում, մաշկի ժամանակավոր փոխպատվաստման նպատակով։*

## ԷՀՄ՝ ԽՈՀԱՆՈՑՈՒՄ

*ԳՖՀ-ի մասնագետները նախագծել են միկրո-ԷՀՄ-ով խոհանոցային էլեկտրասալիկ։ Մեքենան կառավարում է եփելը, շոգեխաշումը, տապակելը և տնային պայմաններում կերակուրների պատրաստման այլ պրոցեսներ։ Այն ապահովում է 120 ծրագրի կիրառումը։ Սալիկի աշխատանքը կարելի է կառավարել և՛ ձեռքով, և՛ կոճակների սեղմմամբ։*

## ԽՏԱՑՆՈՂ ՊԱՅԹՅՈՒՆ

*Ժամանակակից եղանակներով մետաղ հատելիս մեծ քանակությամբ մետաղ վերածվում է տաշեղի։ Տաշեղի համաշխարհային «արտադրության» ամենամյա թողարկումը հասնում է միլիոնավոր տոննաների։ Տաշեղը կրկին օգտագործելու համար մինչև հալեցնելն անհրաժեշտ է այն նախ խտացնել, դարձնել բրիկետ։ Խարկովի ավիացիայի ինստիտուտի թռչող սարքերի արտադրության ամբիոնն ստեղծել է իմպուլսային բրիկետավորման մեքենա։ Խարկովցիների այդ ոչ մեծ մեքենան, օգտագործելով էներգիայի պայթյունը, րոպեում վերամշակում է մոտ 20 կգ տաշեղ։*

*Խարկովի ալյումինաբրոնզե համաձուլվածքների գործարանում բրիկետավորման նոր եղանակը տարեկան տվեց ավելի քան 300 հազար ռուբլու տնտեսում։*

## ԴԵՂԱՆՅՈՒԹ՝ ՄԱՆՐԷՆԵՐԻՑ

*Տրոմբոֆլեբիտը ծանր հիվանդություն է։ Այն բուժող յուրաքանչյուր նորույթ մեծ հետաքրքրությամբ են ընդունում բժիշկները։*

*Վերջերս ԳԴՀ-ում սկսվել է «ավելիզին» պրեպարատի թողարկումը։ Դրա հիմքում միկրոօրգանիզմներից— ստրեպտոկոկերից ստացված ստրեպտոկինազա ֆերմենտն է։ Երկար ժամանակ զգուշանում էին, որ ստրեպտոկինազան կարող է թունավոր ռեակցիա առաջացնել օրգանիզմում, քանի որ այդ ֆերմենտի հետ միասին ստրեպտոկոկերն արտադրում են նաև թույներ և բորբոքում հարուցող նյութեր։ Մտահոգությունները վերացան։ Էրֆուրտյան դեղագործության և թունագիտության ինստիտուտի գիտնականներն Իենի մանրէաբանության կենտրոնական ինստիտուտի մասնագետների հետ մշակեցին մաքուր ստրեպտոկինազայի ստացման եղանակ։ Դրեզդենի դեղագործարարական պրեպարատների գործարանն սկսել է նոր դեղանյութի թողարկումը։*